ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԽԳ.

# ՆԵՐՈՆ ԿԱՅՍԵՐ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ

ԴՐ. ՎԵՐՆԵՐ ՇՈՒՐ

---

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ՄԵՍՐՈՊ ՀԱՊՈՋԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1930

ՆԵՐՈՆ ԿԱՅՍԵՐ ԱՐԵՒԵԼԵԱՆ
ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

---



ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԻԳ.

# ՆԵՐՈՆ ԿԱՅՍԵՐ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1930

# ՆԵՐՈՆ ԿԱՅՍԵՐ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

գրեց

**Դր. ՎԵՐՆԵՐ ՇՈՒՐ**

---

թարգմանեց

**Հ. ՄԵՍՐՈՊ ՀԱՊՈՋԵԱՆ**





ՎԻԵՆՆԱ



ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1930



# ԱԶԴ

*Սոյն գրութիւնը, որ 1923ին* Klio*ի մատենաշարին մէջ (թիւ 15) լոյս տեսած է, կը կրէ հետեւեալ վերնագիրը՝* Die Orientpolitik des Kaisers Nero, von Dr. Werner Schur, Leipzig, Dietrich'sche Verlagsbuchhandlung, *եւ բնութեան նիւթ առած է ոչ միայն յատուկ մոքով արեւելեան — առաջնակողմեան ասիական, հայկական, պարթեւական եւ պոնտական — քաղաքականութիւնը, այլ նաեւ եթովպական, արաբական եւ ծովային ճանապարհով Հնդկաստանի հետ ուղղակի յարաբերութեան հարցերը, Պարսկեան արշաւանքի նպատակը եւ արեւելեան Պարկաստանի դիրքը հռոմէական քաղաքականութեան մէջ։ Մենք թարգմանաբար պիտի տանք այն մասերը միայն, որոնք Հայաստանի պատմութեան կամ՝ նոյնին լուսաբանութեան կրնան ծառայել։*

*Թարգմանիչը։*

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Ասորիք Պոմպէոսի, իսկ Եգիպտոս Աւգոստոսի յաղթանակներով պետութեան կցուելէ յետոյ, Հռոմէական քաղաքականութեան համար արեւելեան խնդիր մը ստեղծուեցաւ, որ կայսերական քաղաքագէտներու նոյնչափ հոգ տածեց, որչափ ներկայ արեւելեան խնդիրը Եւրոպայի: Երբ ասորական նահանգը կազմուեցաւ եւ Հայաստան Հռոմայ պաշտպանեալներու թուոյն մէջ մտաւ, Իրանեան պետութիւնը Հռոմէական կայսրութեան սահմանակից դարձաւ: Այս դրացի հզօր պետութեան հետ յարաբերութիւնը, որ Եփրատ—Տիգրիս երկիրներու մէջ զինուորական կայուն սահմանագծումի մը դժուարութեամբ աւելի կը բարդուէր, կը կազմէ միակ հիմնական հարցը Հռոմի ամբողջ արտաքին քաղաքականութեան, մինչեւ այդ խնդրական երկրին արաբական տիրապետութեան ենթարկումը: Ասոր հակառակ Եգիպտոսի սահմաններու խնդիրներն աւելի

վաճառականական բնոյթ ունէին, որովհետեւ հոն հարց էր՝ քաղաքական եւ տնտեսական յարաբերութիւններու ամէնէն նպաստաւոր ձեւակերպումը հնարաւորել, վերին Նեղոսի՝ փղոսկրի հայրենիքի բնակիչներու՝ Եթովպացիներուն եւ Հարաւային Արաբիայի պետութիւններու միջեւ, որոնց չոր-ծանեայ ժողովուրդները միջնորդն էին Եգիպտոսի եւ Հնդկաստանի տուր եւ առին։

Աւգոստոս արդէն ուշադիր եղած է այս հարցերուն եւ անոնց տուած լուծում մը, որ իր անմիջական յաջորդներուն համար չափանիշ մնացած է։ Սակայն մեր ժամանակաշրջանին առաջին դարու կիսուն հռոմէական արեւելեան քաղաքականութեան այս երկու ռազմադաշտերուն վրայ ալ ծանր տագնապ ծագեցաւ, որ հարկադրեց նոր ուղի մը մտնել։ Ներոնեան կառավարութեան կարող քաղաքագէտները այդ ուղին գտան եւ այնու յաջորդ դարերու քաղաքականութեան ուղղութիւն ցոյց տուին։ Արեւելեան խնդրոյն պատմութեան վրայ ձգուած կարճ ակնարկ մը պիտի ցուցնէ, թէ ինչպէս Աւգոստոսի դրած լուծումին անբաւականութենէն՝ Ներոնեան ժամանակի քաղաքական յեղաշրջումը կարելի է մեկնել։

Երբ Պոմպէոս դիւրին յաղթական արշաւով մը ամբողջ Ասորիքը հռոմէական հանրապետութեան հպատակեցուց, Եփրատը պետութեան սահմանագիծը դարձաւ։ Սա-

կայն այս գետին աղբերականներուն վրայ կ'իջնէ Հայաստանը, — անհարթ եւ երկրին երկայնութեանը ձգուող երկու աստիճանաձեւ ձորերուն պատճառաւ՝ յարձակողին համար դժուարամատոյց լեռնագաւառ մը, ուստի կը բղխեն առաջակողմեան Ասիայի մեծագոյն գետերը՝ Եփրատ, Տիգրիս, Երասխ եւ Կուր. — ահա Հայաստանը, միայն բուռն կռիւներով դրաւելի, որ առկայն իր ակերերուն կը մատուցանէր յարձակողականի յաւագոյն հնարաւորութիւնը թէ՛ դէպի հռոմէական եւ թէ՛ դէպի պարթեւական նահանգները։ Այս երկիրը Պարթեւներու ձեռքը անհանդուրժելի սպառնալիք մըն էր հռոմէական-ասիական ծայրագաւառներուն. իսկ Հռոմայ ձեռքը՝ ահաւական վտանգ մը կը կազմէր պարթեւական պետութեան, միջին Եփրատի եւ Մարական բարձրավանդակին վրայ գտնուող, յաւագոյն երկիրներուն համար։ Ուստի Հայաստանի համար կռիւը հռոմէական-պարթեւական յարաբերութիւններու կնիքը մնացած է իրենց դրացութեան ամբողջ տեւողութեան։

Հռոմ, ինչպէս Հէնարբըրն, Մոմմզէնի ակնարկութիւններն ընդլայնելով, շատ դեղեցիկ կը մեկնէ, արեւելեան քաղաքականութեան այս հիմնական խնդիրը լուծելու համար չորս տարբեր ուղիներ կրնար ընթանալ։ Կրնար այդ կարեւոր երկիրն իր պարթեւ դրացւոյն ձգել, բայց այդ պարագային, ինչպէս տեսնուեցաւ Վեսպասիա—

նոսի ժամանակ, հարկ էր արեւելեան բանակը մեծ չափով ուժեղացնել: Կարելի էր, ինչպէս յետոյ Տրայանոս փորձեց, Հայաստանը հռոմէական նահանգի վերածել. սակայն այդ ընդարձակ եւ ըմբոստ երկիրը միայն հզօր բանակով հնարաւոր էր բռնել, եւ այդ այն դէպքին միայն, երբ Միջագետքի արեւմտեան մեծագոյն մասը հռոմէական դառնար: Ուրեմն՝ եթէ կ'ուզուէր, աւգոստոսեան քաղաքականութեան հետեւելով, Եփրատի սահմաններուն վրայ փոքրաթիւ բանակով մը գոհանալ, կը մնար միայն երկու ընթանալի ճամբայ, զորոնք Հէնտըրսըն հռոմէական իրական եւ անուանական աւատատիրութեան քաղաքականութիւն կ'անուանէ: Կայսրութեան հիմնադիրը առաջին ուղին բռնեց, իր թոռը՝ Ներոն, այն ուղղութեան ուրիշ մէկ փոփոխակը, զոր Հէնտըրսըն անիրաւաբար կը նոյնացնէ երկրորդին հետ:

Աւգոստոսեան քաղաքականութիւնը՝ հակառակ իր հիմնադրին կամքին, իր մէջ պարթեւական պետութեան դէմ մշտական հակառակութիւն կը քողածածկէր եւ ի վիճակի չէր հռոմէական արեւելքի համար հանդարտ զարգացում մը ապահովելու: Հռոմէական Հայաստան մը կամ Հայաստան մը, որ Հռոմ պարթեւական պետութեան հակառակ իրեն հպատակ հարստութիւնը կը պահէր, բաց վէրք մըն էր պարթեւ պետութեան մարմնոյն վրայ: Արշակունիները չէին

կրնար հռոմէական ազդեցութեան շրջանակին մէջ թողուլ այդ կարեւոր երկիրը, որ յինքեան թէեւ դժուարաւ յարմարելի էր, սակայն անյուսալի մօտ էր իրենց արեւմտեան եւ արեւելեան նահանգներու հաղորդակցութեան ներքին զգայուն գծերուն։ Անոր համար ալ Հրահատ Դ. եւ անոր յաջորդները Հրահատակէս, Արտաւան, Վարդան, մինչեւ Վաղարշակ գրեթէ անընդհատ փորձեցին վանել Հայաստանէն հռոմէական ազդեցութիւնը։ Իրենց այս նպատակին ապահով նեցուկ էր միշտ, մանաւանդ հայկական արեւելքի ուժեղ իրանացումը եւ Հռոմի կառավարութիւնը ստիպուած էր կրկին ու կրկին քաղաքական եւ ռազմական ծանր ճիգեր թափել Հայաստանը պահել կարենալու համար։

Աւգոստոս Ք. յ. 20ին անձամբ արեւելք կը գտնուէր եւ իր խորթ զաւակին՝ Տիբերիոսի միջոցով պարթեւական դաշնագիր մը կը կնքէր, որ Կրասոսի պարտութեամբ գերուած զինանշանները ետ կը դարձնէր եւ հռոմէական զէնքերու պատիւը կը վերականգնէր, Հայաստանը վերստին ամբողջը Հռոմի ձեռքը կը յանձնէր եւ կարծես թէ երկու մեծ պետութիւններու բարեկամական յարաբերութեան սկիզբը կը դնէր։ Սակայն արդէն Ք. յ. 1ին ալեւոր կայսրը հարկադրուած էր իր թոռը՝ Կ. Կեսարը, վերստին Հայաստան ուղարկել կարգադրելու համար դահակալութեան խառնակութիւնները, ո-

րանք կը ստանային պարթեւական ազդեցութիւնը դերիշխող դարձնելու։ Յաջորդ տարիներուն՝ իշխանին կանխահաս մահով ընդհատուած Հայաստանի խնդիրներուն միջամտութեան քաղաքականութիւնը, աժամայէս հարկ չանանուեցաւ շարունակել, մանաւանդ որ Հռենոսի եւ Դանուբի սահմաններու վրայ քաղաքական դժուարութիւններ կը ափրէին եւ պարթեւ պետութիւնն ամբողջական քայքայման մէջ էր։

Սակայն երբ 15ին Արտաւան մեծ արքան Հայաստանն ալ գրաւեց եւ Եփրատի սահմաններուն կը սպառնար, այլեւս ուժեղ միջամտութիւն մը անյետաձգելի դարձաւ։ Տիբերիոս կայսեր որդեգիրը եւ գահակիցը՝ Գերմանիկոս 18ին արեւելք գնաց եւ յաջողեցաւ հոն նոր հարստութեան հետ ազատական դաշնագրին իմաստով համաձայնութիւն մը կնքել որով Թագաւորն Եփրատի սահմանագծին կը համաձայնէր, Հայաստանը Հռոմի կը թողուր, եւ հոն պաշտպանեալ նոր Թագաւոր մը կը դրուէր։ Սակայն երբ վերջինս 33ի ժամանակներն մեռաւ,, Արտաւան իր երէց որդին Հայաստանի գահը բարձրացուց, որուն հետեւութեամբ Ծերունի Տիբերիոսը, արեւելեան քաղաքականութեան մէջ իր առաջին յաջողութենէն յետոյ տարիէ աւելի ետքը՝ անգամ մ'եւս տխրուեցաւ Հայաստանի տիրապետութեան համար Ծանր կռիւ մղելու։ Միհրդատ վրացի իշխանը 36ին՝ բուն հա-

կամարտութիւններու տարակոյս դարձած այս երկրին Հռոմի պաշտպանեալ թագաւորն եղաւ եւ Կալիգուլայի անխնամ քաղաքականութենէն ծնած պարթեւական միջնախաղէ մը յետոյ, 43էն անդին կրցաւ հռոմէական ուժերու օգնութեամբ իր դիրքն պահել։

Բայց վերջապէս 51ին աղէտքը կատարեալ եղաւ, երբ մէկ կողմանէ կարող Վաղարշակի գա՛հ բարձրանալովը պարթեւական պետութեան մէջ անդորրութիւնը տիրեց, միւս կողմանէ Հռադամիզ վրացի իշխանն իր հօրեղբօր Միհրդատի դէմ պալատական յեղափոխութիւն մը յարոյց, եւ անոնց համբերութեան Կղաւդիոսի արտաքին քաղաքականութեան զուտ բրիտանական ուղղութիւնը եւ Ասորիքի տեղակալին հեղգ հանդարտութիւնը։ Կղաւդիոսի մահուան ատեն Հռոմէական արեւելեան քաղաքականութիւնը կատարեալ կացութեան մէջ էր. Հայաստանը, առաջակողմեան Ասիայի այս միջնաբերդը, որուն տիրապետութեան վրայ հիմնուած էր Աւգոստոս արեւելեան սահմաններու պաշտպանութեան կայմը, կորսուած էր եւ Պարթեւներու արքային եղբայրը, երիտասարդ եւ ընդունակ Տրդատը, այդ կարեւոր երկրին բացարձակ տէրն էր դարձած։ Այս պարագաներու մէջ Հռոմէական տէրութեան համար հրամայողական անհրաժեշտութիւն էր արեւելեան յարաբերութիւններով զբաղիլը։

Ներսէսի խորհրդատուներն ըմբռնած էին, թէ Աւգուստոսի ընտրած ուղին խաղաղութեան ուղին չէր, եւ միայն մեծ զոհերով եւ վտանգներով կը հնարաւորէր ինքնըրական երկրին անկախական պահպանումը: Անոնք ճանչցած էին թէ պարթեւական պետութեան դէմ հակամարտութիւնը յարմար հիմ մը չէր հռոմէական արեւելեան քաղաքականութեան, քանի որ Հայաստան իր քաղաքակրթութեամբ անկէ կախում ունէր: Եւ այդ խորհրդատուները մեծ քաջութիւնն ունեցան՝ հեռանալով իրենց լաւագոյն աւանդութեան, չեղելու Աւգուստոսէ ընդհատուած ուղիէն:

Ներսէսի խորհրդականները նախապատուի համարեցան ստեղծել հայ պետութիւն մը, որ թէ՛ Հռոմի պիտի հպատակէր եւ թէ՛ պարթեւական երկրորդական պետութիւն մը պիտի մնար: Հէնարբորն այս լուծումը անսովորական հռոմէական գերիշխանութիւն կը կոչէ, որ թէեւ կերպարանս ուղիղ է, սակայն այդ բացատրութիւնը նորութեան էութիւնը լիովին չի պարզեր: Հայաստանի վրայ ազդեցութեան բաժանումը, որ տեսակ մը համիշխանութիւն պիտի կազմէր երկու մեծ պետութիւններու միջեւ, եւ ուր պարթեւ արքայիկ մը իրականին իր ձեռքն պիտի ունենար ամէն իշխանութիւն, նորաստեղծ կացութեան միայն մի երեսը կը պատկերացնէր: Այս խնդրոյս մէջ կարեւորագոյնն էր Պարթեւաց մեծ արքային հետ հռոմէա-

կան յարաբերութիւնները նոր ձեւաւորումը։ Կաղկանդող Թշնամութեան փոխարէն, որ ցարդ արգելք հանդիսացած էր Հայկական խնդրոյն լուծումին, պիտի անցնէր քաղաքական սերտ համերաշխութիւն մը, որուն համար Կորբուլոն 63ի բանակցութիւններու մէջ Ընկերակցութիւն առաջուածը կերպարկած է [1]։ Հայ դահին իշխող արշակունին պէտք չէ որ այլ եւս իր տան շահերուն եւ իր աւատատուի երդման միջեւ երկընտրանքի դժուարին կացութեան մէջ գտնուէր։ Հռոմէական արեւելեան սահմանները պիտի պաշտպանէր այսուհետեւ պարթեւ պետութեան հետ բարեկամ յարաբերութիւնը, որ պիտի հիմնուէր Հայաստանի մէջ արդար իրաւունքներու երկակողմանի ճանաչումին վրայ։ Ներոնեան կառավարութիւնն այս մեծ նպատակը առաջ տարուան ծանր կռիւներու մէջ անսասան աչքի առջեւ ունեցած է [2]։

Ներոնեան կառավարութիւնն արեւելեան քաղաքականութեան մարզին մէջ ստանդական գծէն հեռանալով, ի սկզբան միայն պաշտպանողական դիրքումներով կ՚առաջնորդուէր, սակայն յետոյ հետզհետէ աշխարհակալութեան ընդարձակ ծրագիր մը ընդգրկեց, որուն միակ ձգտումն էր պար-

[1] Տակիտ. ԺԵ, 27։

[2] Ներոնի պարթեւական քաղաքականութեան միտանականութիւնը՝ իր հետախոյզներէն ո՛չ մին ճիշդ ըմբռնած է։

թեւական ամբողջ դեպութիւնը Հռոմի ազդեցութեան ենթարկել: Մեծապէս ուշագրաւ է, որ այս հելլենական ազդեցութեամբ արտաքին քաղաքականութիւնը կը համընթանայ դեպութեան ներքը՝ ազգային–հռոմէական դիկտատորութեան գաղափարէն հեռանալուն եւ Կեսարի դիտումին համաձայն հելլենական համաշխարհային միապետութեան մը կանգնումի ձգտումներուն: Բայց արեւմուտքի յետաշրջումը բացարձակապետութեան հետ ոչնչացուց արեւելեան այս մեծ յատակագիծները. եւ սակայն վերջին Կղաւդեանի մինչ այս արեւելեան ծաւալուն քաղաքականութիւնը մասնաւոր ուշադրութեան արժանի է: Այս աշխատութեան նպատակն է այդ քաղաքականութեան ծագումն, ընթացքը եւ ձգտումները քննութեան առնուլ:

Մոմզէնի[3] կը պարտինք այն տեսութիւնը, թէ Ներոնի պարթեւական քաղաքականութեան մէջ դիտումնաւոր եւ իր պատճառներու մէջ արդարացի շեղում մը կայ Աւգոստոսի աւանդութենէն: Իրմէ վերջը ամէնէն աւելի Բ. Վ. Հէնտերսոն[4] այս տեսութիւնը յառաջացուցած եւ հիմնաւորած է. սակայն անոր ուշադրութենէն վրիպած է կայսերական քաղաքականութեան յարահետեւողականութիւնը եւ նպատակին անշեղ ձգտումը տասնամեայ կռիւներու յա–

[3] Հ. Պ. Ե. 384 եւ յջ.:
[4] Ներոն, 149 յջ.:

բախտախուսութիւններու մէջ։ Մեր ջանքը պիտի ըլլայ ըստ պատշաճի գործածել այդ տեսութիւնը, հիմնակէտ առնելով Կորբուդանի պատերազմական տեղեկագիրը, որ կը գտնենք երկու իրադեկներու՝ Տակիտոսի եւ Դիոնի քով։ Պիտի փորձենք յաջորդ էջերով աշխարհագրական եւ արեւելագիտական հետազօտութիւններու տուեալներու քննութեամբ՝ Ներոնեան արեւելեան քաղաքականութեան ասիական շրջագիծը ըստ կարելւոյն լուսաբանել։ Պարթեւական ծանօթ պատերազմը լաւագոյն մեկնակէտը պիտի կազմէ։







# ԳԼՈՒԽ Ա.

## ՆԵՐՈՆԻ ԳԱՐԹԵՒԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

*Պարթեւական տասնամեայ պատերազմը, որ Ներոնի կառավարութեան մեծագոյն մասը կը բռնէ, երկու գլխաւոր գործողութիւններէ կը բաղկանայ, որոնք մարտադադարով մը կ'անջատուին իրարմէ. այս ժամանակամիջոցները մեր քննութեան մէջ առանձին մասեր պիտի կազմեն: Առաջին բանակցութիւններու եւ Հայաստանի գրաւման շրջանը 54 տարւոյն աշունէն մինչեւ 59ի մէջերը կը տեւէ: Հռոմի կառավարութիւնը՝ 59ի եւ 60ի մարտադադարի ժամանակը օգտագործած է ուրիշ մարզերու վրայ քաղաքական գործողութիւններու: Պարթեւական պետութեան համախմբուած ուժին դէմ որոշիչ կռիւը կը բացուի 61ին, որ 63ի խաղաղութեամբ հետապնդուած վախճանին կը յանգի: Պիտի աշխատինք ի վեր հանել, թէ Հռոմի քաղաքականութիւնը այս շրջանին ամբողջ տեւողութեան միանական նպատակ մը կը հետապնդէր, հակառակ կիրարկուած միջոցներու այլազանութեան: Պիտի ջանանք ցուցնել, թէ ինչպէս պատերազմին միայն*

շատ վերջերն, արեւելեան Իրանի մէջ կազմուող քաղաքական համախմբումէն զարգացաւ տարածումի այն ընդարձակ ծրագիրը, որ Ներոնի վերջին տարիներուն արեւելեան քաղաքականութեան իր յատուկ նկարագիրն կու տայ։ Սակայն պէտք չէ մոռնալ ըսել, թէ ամբողջ գործողութեան մեկնակէտն պաշտպանողական եղած է։

## 1· Հայկական պատերազմը (54—59)։

Հայ պատգամաւորութիւն մը, արդէն 54 տարւոյ աշնան վերջերը Հռոմ եկաւ, պարթեւ բռնակալին դէմ պետութեան օգնութիւնը խնդրելու համար[1]։ Գիտենք թէ, Բուռոս եւ Սենեկա Հայկական խնդրոյն վճռականութիւնն օգտագործեցին, արքայամօր՝ Ագրիպպինայի ազդեցութիւնը ոչնչացնելու եւ կառավարութեան սանձն իրենց ձեռքն առնելու համար[2]։ Կայսերական պահակագնդին հրամանատարը եւ ազգին մտաւոր կեանքին առաջնորդը այս պարագային կնքեցին այն դաշնադրութիւնը, որ մինչեւ Բուռոսի մահը իշխանութիւնն իրենց ապահովեց, եւ արեւելեան քաղաքականութեան ամէն վարչութեամբ լաւագոյն ապացոյցը տուին իրենց վարչական կարողութեան[3]։

Հռոմի հպատակ Հայաստանի՝ Պարթեւ–

[1] Տակիտ. Տ. ԺԳ. 6. Դիո. ԿԱ. 3, 3։
[2] Տակիտ. Տ. ԺԳ. 5. Դիո. ԿԱ. 3, 4։
[3] Տակիտ. Տ. ԺԳ. 6։

ներէ դրաւումը եւ Հռոմայեցւոց՝ Հռոմէ ճանչցուած թագաւորին վտարումը, միայն իբրեւ պատերազմի յաջողութեան կրնար նկատուիլ. ուստի եւ անմիջապէս հրահանգ տրուեցաւ Ասորիքի կուսակալին Թշնամութիւնները փութով սկսելու։ Լեգէոնները պէտք է սահմանագիծ փոխադրուէին եւ Եփրատի վրայ կամուրջ ձգէին, իսկ Կոմագենէի՝ Անտիոքոս եւ Քաղկիսի՝ Ագրիպպա թագաւորներն պէտք էին իրենց բանակներովը գետն անցնիլ։ Նոյն նպատակին համար Հայաստանի կողքին եղող նոր պետութիւններ հիմնուեցան, Փոքր Հայքը Հերովդէսի սերունդէն՝ Արիստոբուլոսի եւ Ծոփքը՝ Եմեսացի Սոյեմոսի իշխանութեան ներքեւ։ Լեգէոնները պատերազմական բարձրութեան հասցնելու համար ասիական զաւառներու մէջ մեծ թուով զինուորագրութիւն պիտի կատարուէր։ Ձեռնարկին գլուխ կարգուեցաւ Կապադովկիոյ եւ Գաղատիոյ փոխարքան Կն. Դոմիտիոս Կորբուլոն, որ Կղաւդիոսի օրով իր կարողութիւնը ցոյց տուած էր Գերմանիոյ մէջ. իր ընտրութիւնը պետական նոր վարչութեան հանդէպ ընդհանուր վստահութիւն յառաջ բերելու մեծապէս նպաստեց [4]։

Կորբուլոն 55ի գարնան Կիլիկեան Եգէայի մէջ տեսակցութիւն մ'ունեցաւ Ասորիքի փոխարքային՝ Ուսմիոս Կուադրա-

[4] Տակիտ. Տ. ԺԳ. 8։

տուի հետ, որմէ ընդունեցաւ Գրդ. Գաղղիական եւ Զրդ Երկաթապատ (Ferrata) երկուլեգէոնները[5] եւ անոր հաղորդեց կառավարութեան քաղաքական գիտումները։ Այդ միջոցին Վաղարշակ արքային դէմ ապստամբած էին Վրկանները եւ իրենց առաջնորդ ընտրած փախստական Վարդան արքային մէկ որդին[6]։ Այս ապստամբութիւնը պետութեան հիմերն սասանած էր. եւ հարկադրած էր Հայաստանն արեւելեան սահմանին անհրաժեշտ եղող պարթեւ բանակներէն պարպելու։ Այս պարագաներու մէջ Հռոմ կրնար այն ակնկալութիւնն ունենալ, թէ անգէն Վաղարշակը եւ պարթեւական պաշտպանութենէ զուրկ անոր եղբայրը՝ Տրդատ՝ պիտի ուզէին նոր հիմունքներու վրայ ընդունելի համաձայնութեան մը գալ։ Ուստի արդէն 55 տարւոյ ամառը երկու փոխարքաներու պատգամաւորները Տիգրան ուղեւորեցան պատանդներու յանձնում եւ հռոմէական ուժին հանդէպ աւանդական յարգութիւնը պահանջելու համար. անոնք պիտի փորձէին միանգամայն՝ Տրդատի հայ գահին վրայ ճանաչումի պայմաններու մասին բանակցութեան ճամբայ մը հարթել[7]։ Վաղարշակի կը մնար այս առաջարկն ըն-

---

[5] Առանց վերջին (ԺԴ. 40) իր բանակին կորիզը կը կազմեն։

[6] Այս մասին՝ տաղագոյցները տես յետոյ Գլ. Բ, յօդ. 2։

[7] Ուղիղն այս է, Հռոմ. Պատմ. Ե. 385։

դանիլ, որ եթէ հայկական հարցին ընդունելի լուծում մը չէր ալ խոստանար, գոնէ յետաձգում կը հնարաւորէր։ Այսպէս գոյացաւ պարթեւական խաղաղութիւնը, զոր ծերակոյտը կայսեր համար մեծ շքով վաւերացուց[8]։

Հռոմ կը յուսար, թէ այսպէս իր նպատակին հասած էր, առանց զինուորական ուժի միջամտութեան. Մնացածը կախում ունէր հայկական հարցին հայոց բանակցութիւններու յաջողութենէն, որոնք ամբողջ 56 տարին տեւեցին։ Այս բանակցութիւններու ընթացքին տեսնուեցաւ, թէ ընդհանուր գծերով կազմուած նախադաշինքով հակառակութիւնները ո՛չ թէ բարձուած այլ միայն սքողուած էին։ Հռոմ կը պահանջէր յետադարձ նախապատերազմեան վիճակին, որուն Տրդատի հպատակութեան ցոյցն իբրեւ նախապայման անոր հայ գահակալութեան։ Իսկ Պարթեւները բարեկամական դաշնագրի կնքումէն կը հետեւցնէին թէ Հռոմ այնու գոյավիճակը ճանչցած է եւ լռելեայն հրաժարած Հայաստանի վրայ իր գերիշխանութենէն[9]։ Համաձայնութիւն մը գոյացնելն անկարելի եղաւ եւ վճիռն մնաց զէնքերու եւ Կորբուլոն 57ի գարնան կռիւը բացաւ[10]։

---

[8] Տակիտ. Տ. ԺԳ. 8, 9։
[9] Տակիտ. Տ. ԺԴ. 34. Պարթեւական ըմբռնումը ԺԴ. 37։
[10] Ժամանակագրութեան մասին տ. Klio ԺԹ.։

Զօրավարը սպաման տարին անօգուտ չէր անցուցած, ըմբոստ ստատատուին դէմ պատմական արշաւի մը գինուորական եւ քաղաքագիտական ամէն պատրաստութիւն տեսած էր։ Կորբուլոն երկաթեայ կարգով Ասորիքի կարգադրեց պահակագնդին բարեկարգութիւնը իր բարձրութեան հանած էր եւ խիստ հրահանգներով զայն հայկական լեռնակռիւներու յարմար գործիքի մը վերածած[11]։ Անկէ զատ, կայսեր դիմած էր խնդրելով, որ հռոմէական արեւելեան բանակը տեւականապէս նոր լեգէոնով մը աւելացուի․ իր այս խնդրանքին վրայ 57ի գարնան Միւսիական Դ․ Սկիւթական լեգէոնը իր բոլոր օժանդակներով Ասորիք փոխադրուեցաւ[12]։ Սակայն, որովհետեւ այդ գունդը ժամանակին՝ արշաւի սկիզբն՝ Հայաստան այլ եւս չէր կրնար հասնիլ, Կորբուլոն սուրիական Ժ․ Փրետենսեան լեգէոնէն՝ մօտ կէս լեգէոն ընտրեալներ ստացաւ[13] եւ երկու ամբողջ լեգէոնով — Գ․ Գաղղիական եւ Զ․ Երկաթապատ — ու երրորդի մը կիսագնդով Հայաստանը գրաւեց[14]։

---

[11] Տակիտ․ Տ․ ԺԳ․ 35․ Փրոնտ․ Դ․ 1, 21, 28։

[12] Այս կարգադրութեան տեւական նկարագիրը ունենալը կը հետեւցնէ Դոմաշեւսկի (Rh. Mus. 47, 216, 1) օժանդակներու միաժամանակ փոխադրութենէն։

[13] Տակիտ․ Տ․ ԺԳ․ 37։

[14] Փրոնտ․ Խրատներ ուղիղ ուրեմն, երբ կ՚ըսէ, թէ Կորբուլոն Հայաստանը երկու լեգէոնով գրաւեց։

*Այս միջոցին, Վրաստանի հետ նախկին յարաբերութիւններն քաղաքականապէս վերահաստատուած էին, Փարսման թագաւորը՝ Հայաստանի Միհրդատ թագաւորին դէմ, իր Հռադամիստ որդւոյն ձեռնարկին օժանդակելով՝ յանցակից էր Հռոմի արեւելեան քաղաքականութեան փլուզումին։ Կորբուլոն ներում խոստացաւ անոր պայմանով, որ զղջումի ակնյայտնի ապացոյց մը տայ. տար վրայ բանակայր՝ իր անհամաձայն եւ իրեն իսկ վտանգաւոր որդին, իբրեւ մատնիչ գլխատել տուաւ եւ ինք զինքն ու իր պետութիւնը Հռոմի տրամադրութեան տակ դրաւ։ Այս միջոցին էր, որ Մազքացիք՝ հայ-կովկասեան սահմանայեններու բնակիչներն, առաջին անգամ Հռոմի դաշնակիցներու մէջ մտան [15]։ Այսպէս՝ Հայաստանը միջին Եփրատէն մինչեւ վերին Կուր, Կամագենէէ մինչեւ Վրաստան Հռոմի հպատակ պետութիւններէ շրջապատուած էր. եւ միայն Աղուանները Հռոմի գերիշխանութիւնը չճանչցան այլ եւս եւ ապագային այլ յամառօրէն պահեցին իրենց անկախութիւնը [16]։*

*Կորբուլոն 57ի գարնան հիւսիս-արեւմտեան Հայաստան մտաւ։ Այս արշաւի ուղղութիւնը դէպի Կարնոյ դաշտը, որ պետութեան կենդրոնական նահանգներէն՝*

---

[15] Տակիտ. Տ. ԺԳ. 37։
[16] Տես վերը Գլ. Բ, յօդ. 1։

Արտաշատու ձորէն, Վանայ լճի հարթա-վայրէն եւ Երասխի հովիտէն զատուած մերձենալի կամ անելանելի լեռներով ան-ջատուած է, յայտնի փաստ է, թէ այդ գոր-ծողութիւնը պարզապէս զինուորական ցոյցի բնոյթ ունէր[17]: Այս ցոյցը սակայն իր նպա-տակին չհասաւ. քանի որ Տրդատ լեգէոն-ները Եփրատի դաշտին վրայ Հանդիա թո-ղուց եւ գոհացաւ անոնց նիզակակիցներու եւ բանակարամթիններու դէմ մանր կռիւնե-րով: Կորբուլոն, կարճ սպասումէ մը ետքը բուռն կռիւ մը բանալու հարկը անսաւ եւ իր կարգին ամբողջ արեւմտեան եւ հիւ-սիս-արեւմտեան Հայ սահմանին վրայ մանր մարտ սկսաւ: Կանոնաւոր բանակին բաժի-ներու օժանդակութեամբ Հռոմի դաշնակից-ները՝ Կոմագենէն մինչեւ Մաքերու երկիրն ու Վրաստան, իրենց զօրքերով թշնամւոյն երկիրն ոփոխ մտնէին[18]: Այս կենդրոնա-ցած յարձակումին առջեւ, որուն շատ դժուարաւ կարելի էր դիմադրել, Թուլա-ցաւ Թագաւորին դիմադրելու կամքը եւ որոշեց վերստին բանակցութեան ուղին մտնել:

Թագաւորին քաղաքագիտական այս քայլին Հանդէպ Հռոմի յայտարարած պատ-

---

[17] Այս գաւառին աշխարհագրական կցկտուա-մին մասին տես J. H. Phil. 28. 99 յէջ.: 58ի եւ 63ի արշաւանքներու ժամանակ Կորբուլոն այլ Արտաշա-տայ դաշտէն կը յառաջանայ:

[18] Տակիտ. Տ. ԺԳ. 37: Այս արշաւի տեւողու-թեան մասին տես Klio ԺԹ.:

րաստակամութիւնէն, կու գամ այն մի եւ նոյն եզրակացութեան, որու յանգած էի այս արշաւին ամբողջ ծրագիրը գծելով. Հռոմէացիք իրենց այս արշաւով կ'ուզէին թշնամւոյն բանակցութեան կամքը եւ համաձայնութեան գալու պատրաստակամութիւնը փորձել։ Տրդատ բանակցութիւններն սկսաւ ճիշդ այն կէտէն, ուր նախորդ տարին խզուած էին։ Անոր պատգամաւորները կը գանգատէին թէ Հռոմ 55ին դաշինքն եղծած է, Հայկական իր երկիրներուն վրայ յարձակելով, եւ պարթեւական պատերազմ կը պատճառէին եթէ Հռոմ գործողութիւններն անմիջապէս չդադրեցնէր։ Ուրեմն պատասխանատուութիւնը աւելի բանակցութիւններու սկսելու մէջն էր, եւ նիւթականն ոչ մէկ նոր առաջարկ մը կը բերէր, հապա հին առաջարկը կանգուն կը մնար։

Կորբուլոն եւս իր պատասխանին մէջ վերջին բանակցութիւնները հիմ կ'առնուր, եւ պարթեւ իշխանին խորհուրդ կու տար, կերպարանէս աղերսագիր ներկայացնել կայսեր եւ աթոռին առաջութիւն խնդրել, ու իր եղբօրը օգնութեան վրայ յոյս դնելով՝ իր պետութեան մէջ ապահով գիրք մը ստանալու հնարաւորութիւնը ձեռքէ չհանել, մանաւանդ որ իր եղբօր ուժերն վրկանեան պատերազմը տարիներով բռնած էր։ Անոր վրայ կ'երեւայ թէ դաշին հետամուտը նոր դեսպանութիւն մը ճամբայ հանած է դէպի Հռոմ։ Այս դեսպաններն են, իմ կար–

ծիրակը, որ 57ի աշնան վերջերն Թատրոնի մէջ ներկայացման ժամանակ իրենց տրուած պատուիններով փիրիկեան պատգամաւոր-ներու նախանձը գրգռեցին[19]: Սակայն համաձայնութիւն չըլլալուն, վասն զի Տրդատ չկրցաւ իւր զինքը Համի ենթար-կելու որոշումը տալ[20]: Կորբուլոնի հետ անձնական բանակցութիւններով իր նպա-տակին հասնելու վերջին փորձն ալ ի զուր անցաւ. Երկակողմանի անվստահութեան ամպէ մը մթագնած, որ վերջին վայրկենին ծրագրուած տեսակցութիւնն ի դերեւ հա-նեց[21]: Աստ խաղաղ համաձայնութեան մը ամէն յոյս խորտակուեցաւ. եւ 58ի գարնան կռիւը վերստին սկսաւ:

Մինչ Տրդատ Համէնացւոց վերջապահ-ներու դէմ վերին Եփրատէն դէպի պոնտա-կան ծովեզրը կը գործէր, Կորբուլոն ամ-բողջ բանակովը որոշիչ հարուածին կը ձեռ-նարկէր թշնամւոյն մայրաքաղաքին վրայ արշաւելով[22]: Այրի լեռան վրայէն իջաւ դէպի հարաւ՝ Այրաշկերտի քով վերին Արա-ծանւոյ դաշտը, եւ անկէ հիւսիս-արեւելք ուղղուելով Դիադինի եւ Բայազիտի կրճերէն

---

[19] Տակիտ. Տ. ԺԴ. 54 եւ Ս. Կզ. 25: Այն եզերքին այս գեղապանութեան մերձեցումը նոր է:

[20] Տակիտ. ԺԴ. 38:

[21] Տակիտ. Տ. ԺԴ, 38:

[22] Վերին Եփրատէն դէպի Արտաշատ արշաւի ժամին տես Հ. Ներսէս 170 յջ., դէպի Տիգրանակերտ արշաւի ժամին իր տեսութիւններն Լէհման-Հաուպտի ուղեւորութեան արդիւնքներովը փոփոխելի են:

Երասխայ հովիտը մտաւ։ Հոն յանկարծական խոյանքով մը, Արտաշատէ հարաւ՝ Իգդիրի մօտ յառաջաբերդերը ցրուեց, որոնց ամէնէն ամրացածը Տակիտոսի քով Վոլանդում, իսկ Ստրաբոնի մօտ Ողանէ կը կոչուի[23]։ Ասով մայրաքաղաքին ճամբան բաց էր իր առջեւը. եւ սակայն հարկ եղաւ վերջին ճակատամարտ մը մղելու աճապարանքով հասած Տրդատին դէմ, որ ամենայն սաստկութեամբ արշաւող բանակին վրայ նետուեցաւ, բայց չյաջողեցաւ կասեցնել կռուի կարգով յառաջացող լեգէոնները։ Տրդատ ստիպուեցաւ այսպէս իր պետութիւնը լքելու եւ յաջորդ գիշերն աննկատ հեռացաւ Հայաստանէն. հալածող Հռոմէացիք չկրցան հասնիլ, թէ իր նահանջի ուղղութիւնը Ալբանիոյ երկի՞րը թէ Ատրպատական կը տանէր[24]։

Թագաւորին փախուստէն յետոյ մայրաքաղաքը թէեւ առանց սուրի հարուածի անձնատուր եղաւ. սակայն որովհետեւ այսչափ առաջամուխ դիրքի մը մշտական պահպանութիւնը տրամադրուած ուժերով հնարաւոր չէր, մէկալ կողմանէ ալ որովհետեւ մարտական սահմանին վրայ գտնուող այդ հզօր ամրոցն անվթար թողուլ աններելի էր, ուստի բնակչութեան քաղաքէն դուրս ելլելու բաւականաչափ ժամանակ ձգուելէ յետոյ,

[23] Տակիտ. Տ. ԺԳ. 39, Ստր. ԺԱ. 529։
[24] Տակիտ. Տ. ԺԳ. 41։

քաղաքը կրակի մատնուեցաւ[25]։ Այս միջոցին է որ Կորբուլոն յաղթութեան առաջին լուրը կայսեր ուղարկած է[26]։ Արտաշատի հրկիզումէ անմիջապէս ետքը, համեմատական բանակը իր յառաջարծը սկսած է դէպի Հայաստանի հարաւը եւ արեւմուտքը, որոնք լաւագոյն կապ մ'ունէին պետութեան երկիրներուն հետ[27]։

Այս շարժման նպատակակէտը Տիգրանակերտն էր, Հայաստանի երկրորդ Մայրաքաղաքը, Միջագետքի սահմանագաւառին մէջ։ Լեհման–Հաուպտ[28] տեղւոյն վրայ իսկ ստուգած է թէ, Տիգրանակերտ հիմնուած չէր, Տիգրիսի արեւմտեան աղբերակէն եւ Միջագետքի հիւսիսային անապատադաշտին մէջ բարձրացած Տուր–Աբդինէ հարաւ, այլ կը գտնուէր այն արգասաբեր եւ ջրաշատ նախալեռներու երկրամասին վրայ՝ որ դէպի հիւսիսային եզերքը կը տարածուի։ Մուֆարղինի ընդարձակ աւերակներուն մէջ ապացուցած է մնացորդները քրիստոնեայ Մարտիրոպոլսոյ, որ վերջէն Տիգրանակերտի տեղը բռնած է։ Թէպէտեւ Տակիտոս բացորոշ կը նշանակէ, թէ քաղաքը Մծբինէ միայն 37 մղոն, այսինքն մօտ 55 կիլոմեթր հեռու էր, սակայն բանաւոր-

[25] Տակիտ. Տ. ԺԴ. 41։
[26] Ժամանակագրութեան մասին հմմտ. Klio ԺԹ.։
[27] Տակիտ. Տ. ԺԴ. 23։
[28] Armenien, 381 յէ. եւ 501 յէ. իրմէ առաջ Մօլտկէ (Briefe aus der Türkei, 287) արդէն նոյն գիտողութիւնն ըրած էր։

ները մեծագոյն մասը, այսօր Լէհման-Հաուպտի այս տեսութիւնը ընդունուած է[29]։ Ըստ այսմ Տիգրանակերտ կը գտնուի Մու-Ֆարգինի տեղը՝ արեւմտեան Տիգրիսէ մօտ 50 կիլոմեթր հիւսիս, լեռնաշղթայի մը՝ հին Մասիոսի՝ ստորոտը, որ Տուր-Աբդինի հետ հա-տանքին անկողնով ընդմիջուած լեռնաշար մը կը կազմէ, եւ ոչ շատ հեռու Տիգրիսի հիւսիսային մէկ ճիւղէն, զոր դիւրաւ կա-րելի է նախնեաց Նիմփիոսի հետ նոյնաց-նել։

Կորբուլոնի Արտաշատէ Տիգրանակերտ արշաւի մասին Տակիտոսի տուած տեղե-կութիւնները թէեւ շատ կարճ եւ աշխարհա-գրօրէն մութ են[30], սակայն կարելի է շատ դիւրաւ Լէհման-Հաուպտի վերակազմած ուղեգծին[31] հետ համաձայնութեան բերել։ Ի սկզբան կը նկարագրէ Տակիտոս, լերկ եւ ջրադուրկ լեռներու վրայէն ամառնային անցքին դժուարութիւնները, ապա կը պատմէ Վանայ լճի մօտ Մարդաց դէմ կռիւը, որու պիտի անդրադառնանք քիչ յետոյ. Օգոստոսի վերջերն վերին Արածանւոյ մօտ Ալաշկերտի հովտին մէջ հունձքի դաշտեր մը

[29] Տես Կիպերտ, Փոքր Ասիոյ քարտէսը. V. Chabot. La frontière de l'Euphrate, 358 յջ., Stein, 400, էջհար, Klio, 406 յջ. եւ 95 յջ.։
[Վերջին նաեւ հայերէն. Տիգրան Բ. եւ հայ-լուկուլեան պատերազմները, Հ. Գ. Վ. Գարան-ֆիլեան, Վիեննա 1926 (Ազգ. Մտ. ճԺԳ)։]

[30] Տակիտ. Տ. ԺԴ. 23։

[31] Հմմտ. անոր քարտէսները։

Կ՚առնուի[32]. ասկէ կը շարունակուի ճամբան դէպի Տարօնի նահանգը, հոն Կորբուլոնի կը ներկայանան Տիգրանակերտի պատգամաւորները եւ քաղաքին յանձնումը կ՚առաջարկեն. այս դէպքը տեղի ունեցաւ Մուշի՝ Տարօնի գլխաւոր քաղաքին մէջ, ուր Տիգրանակերտէ եկող ճամբան կը միանայ Արածանիոյ հովտին պողոտային հետ[33]: Լինճէ կամ Իլինճէ լեռնաբերդը վերջապէս՝ կը համապատասխանէ Լեգերդա ամրոցին, զոր Կորբուլոն հակառակ յառաջացեալ եղանակին դեռ կ՚այրէ ու կը քանդէ[34]: Այդ ամրոցը կը տիրէր Տիգրանակերտէ Արշամաշատ (Քարբու) տանող ճամբուն վրայ, որ համեմատական բանակին Ծոփաց եւ Մելիտինէի հետ հաղորդակցութեան միջոցն էր, եւ ասոր համար այս ձմեռոցներէն քաշուելէ յառաջ պէտք էր գրաւել:

Այսպէս ուրեմն ամէն ինչ կը համաձայնի Տիգրանակերտի նոր տեղաւորումին. այս արեւմտեան արշաւագծին հնարաւորութեան դէմ որոշ դժուարութիւններ կը յարուցանեն կարծես Մարերը, որոնք զուգընթաց ուրիշ աղբիւրներու համաձայն՝ Վանայ ծովուն արեւելեան եւ հարաւարեւելեան եզրներն կը բնակէին[35]: Սակայն շատ հաւանական է, որ ասոնց թափառա-

---

[32] Egli, 309:
[33] Egli, 310. Լեհման-Հաուպտ Ա. 522 յջ.:
[34] Լեհման-Հաուպտ Ա. 523:
[35] Ստրաբ. ԺԱ. 522, Պլին. Ե. 12:

կան ցեղերը, նման մեր օրերու Քուրդերուն, ամառները իրենց իրական բնակավայրերէն հեռու դէպի հիւսիս կամ արեւմուտք գաղթելու սովոր էին, եւ այսպէս ծովին հիւսիսակողմը Հռոմէացւոց հետ բախում ունեցած են [36]։

Տիգրանակերտի գրաւումով զինուորական եւ քաղաքական հանդրուան մը հասած էր Կորդուգոն. Հայաստան թշնամիէն մաքրուած էր. Տիգրանակերտի դիրքը հռոմէական բանակին համար ամենայարմար միջնակէտն էր, ուսկից կարելի էր պարթեւ յարձակումի մը դէմ երկրին պաշտպանութիւնը ի գլուխ հանել։ Լեզերասյի մօտերը՝ Տաւրոսի կիրճերու մէջէն՝ ապահով եւ կարճ ուղի մը Արշամաշատ կը հասցնէր, որ Մելիտինէի մէջ հաստատուած հռոմէական յենակէտին հետ սքանչելի հաղորդակցութիւն մ՚ունէր։ Տիգրանակերտի դետանձորը, որ աւելի կը զօրանար քաղաքին ամրութեամբը եւ Լեզերասյ լեռնաբերդով, ապահով կը փակէր Միջագետքէն Տիգրիսի վրայէն յառաջացող բանակի մը առջեւ լեռնակիրճերու մուտքը, մանաւանդ որ Պարթեւները կ՚անգիտանային դեռ արհեստական արգելքներու դէմ կռուելու միջոցները։

---

[36] Այսպէս կ՚ընդունի արդէն Egli, 307 յջ. իսկ Հէնդրբրոնի մեկնութիւնը՝ թէ Կորդուգոն Վանայ ծովու արեւելքէն իջնելով՝ Բաղէշի գետակին կիրճէն անցած ըլլայ, Լեհման-Հաուպտի ուղեւորութեամբ հերքուած է։

Այս հարաւէն անմերձենալի դիրքը հեշտ հաղորդակցութիւն մ'ունէր վերէն եւ ստորէն Արածանւոյ հովիտներուն հետ, եւ ըստ այժմ ալ եթէ Կորդուաց երկրէն յարձակման մը վտանգ սպառնար, պաշտպանող բանակը ամէն ժամանակ դիւրաւ կրնար Վանայ ծովու շրջակայքն հասնիլ եւ անկէ արագութեամբ անցնիլ Արտաշատ, ինչպէս ըրաւ 59ի ամառը արշաւ յառաջացող Հռոմէական գունդ մը, երբ Տրդատ Ատրպատականէ վերջին փորձ մը փորձեց կորսնցուցած իր պետութիւնը վերադարձնելու.[37] Այս կեդրոնական պաշտպանողական առաջնակարգ դիրքին վրայ հիմնած էր Կորբուլոն իր ռազմական ծրագիրը քանի մը տարի յետոյ ծագելիք պարթեւական մարտին համար[38].

Հռոմ պատերազմին քաղաքական նպատակին ալ հասած էր. Հայաստան դարձեալ ամբողջ կայսեր ձեռքն էր եւ կրնար պետութեան շահերուն պահանջին համաձայն տրամադրել անոր վրայ: Արշակունի հետամուտին կը մնար իրաւցէս միմիայն կայսեր շնորհին յոյսը, եթէ կանխամեծար չհամարէր պարթեւական պետութեան բոլոր ուժովը նոր պատերազմի մը — ելքին մէջ անստոյգ — ուղին բռնել: Սակայն նկա-

[37] Տակիտ. Տ. ԺԴ. 25:

[38] Այս դիրքին յարմարութիւնը Հէնդըրըրն չէ ճանչցած, վասն զի Տիգրանակերտի տեղւոյ մասին սխալ կարծիք կազմած է. ուելլին տես վարը Գլ. Ա. յօդ. 3:

ակրով Տրդատի եւ անոր թագակիր եղբօր մեծատենչ բնութիւնը, կարելի չէր վայրկեան մ՚իսկ տարակուսիլ թէ ըմբոստ Վրկաններու դէմ մղուող ծանր կռուին վերջացումէն անմիջապէս ետքը, Հայաստանի համար նոր եւ աւելի բուռն պարթեւական պատերազմը անխուսափելի պիտի ըլլար: Համեմատական կատարելութիւնը, որովհետեւ այդ միջոցին դեռ Հայաստանէն անդին յառաջանալու միտք չունէր, ազատման քաղաքականութեան մը հետեւեցաւ․ 59ի գարնան արեւելեան խնդիրներուն առժամեայ կարգադրութիւն մը ըրաւ, եւ այնուհետեւ իր ուշադրութիւնը դարձուց աւելի ապահովական հարցերու: Յաջորդ հատուածին մէջ պիտի նկատենք 59 տարուայ առժամեայ կարգադրութիւնները եւ մարտադաշտի շրջանը դրուող ուրիշ հարցեր:

## 2․ Պարթեւական պատերազմի մարտադաշտի շրջանը:

Վերջին բանակցութիւններու (57/58ի ձմեռը) ի դերեւ ելլելէն եւ վիճական երկրին 58ի ամառը զէնքի ուժով գրաւումէն ետքը, ի սկզբան Հայաստանի նկատմամբ միմիայն Հռոմէական քաղաքականութիւն մը հնարաւոր էր, այսինքն վերադարձ դէպի Աւգոստոսի աւանդութիւնը, որ Հռոմի կողմանէ նշանակուած հելլենական գոյնով իշխանաւորի մը միջոցով երկրին տիրապետութիւնը

տպաւորել կը ջանար։ Ըստ այսմ ալ կայսրը 59ի գարնան անտիրական գահը՝ յանձնեց Հերոդեսեանց Կապպադովկեան ցեղէն իշխանի մը, որուն արուեցաւ՝ Հայ արքայից մեծափառ՝ Տիգրան անունը։ Տրդատի վերջին յարձակումն եւ մղելէ յետոյ Կորբուլոն նոր արքան իր գահը բարձրացուց [39]։

Արեւելեան սահմանին պաշտպանութեան նոր դրութիւնը երեք ստորձանի կը բաժնուէր։ Առաջացին եւ վտանգուած պահակը կը կազմէր Հայաստանի թագաւորն, որուն տրուած էր հռոմէական օգնական գունդ մը. պաշտպանողական երկրորդ գօտին կը շրջագծուէր Վրաստանէ մինչեւ Կոմագենէ հռոմէական հին հողին վրայ հաստատուած հպատակ պետութիւններէ, որոնք այն միջոցին Հայաստանի մասամբ ընդարձակուեցան. անոնց թիկունքը կեցած էին արեւելեան բանակին հինգ լեգէոնները՝ այժմ միանգամայն ենթարկուած Կորբուլոնի վերին հրամանատարութեան, որ Դուրմիոս Կուադրատոսի՝ անշուշտ նախորդ տարին տեղի ունեցած մահէն ետքը՝ Ասորիքի վարչութիւնն ալ իր ձեռքն առնէր եւ հիմայ կերպաւէս ալ Հռոմէական Արեւելքի առաջին նահանգին կուսակալ կը կարգուէր [40]։

[39] Տակիտ. Տ. ԺԴ. 26. ուր կարելի է գտնել նոր կարգադրութիւնը ամբողջութեամբ։ Ժամանակագրութեան մասին հմմտ. Klio ԺԲ։

[40] Արդէն 58ի աշնան Վրկանեան դեսպաններուն զինուորական ուղեկիցներ կը նշանակէ, որոնք մինչեւ Պարսից ծովը պիտի ընկերանային անոնց։

Հայաստանի ժողովրդեան մէջ տիրող աղանդաւորութեան եւ Արշակունի դահի–հետամուտին, որ երկարատեւ իշխանութեամբ ժողովրդեան սէրը եւ վստահութիւնը շահած էր[41], մշտատեւ ժառանգութեան պատճառով, նոր Թագաւորին դիրքը կարելի էր ապահովել միմիայն բաւականաչափ ուժեղ հռոմէական գունդ մը օգնական տալով անոր։ Այս պատճառով Կորբուղոն իր պաշտպանեալին Թողուց 1000 լեգէոնականներ[42], երեք օժանդակ գունդ եւ 2 գումարտակ դաշնակցային այրուձի, որոնց ընդ ամէնը 3000 հռոմէական կիրթ զինուոր։ Իր գնահատումովն այս բանակը բաւական ուժեղ էր դահը ներքին խռովութիւններու դէմ ապահովելու եւ պարթեւական արշաւի մը պարագային՝ Թագաւորին նախնական զօրավիգը դառնալու։

Հռոմէական բանակին այս առաջադրահին ետեւը, որ իրանեան ազդեցութեան ենԹակայ հողին առհմանակից էր, եւ որուն առաջնորդն էր Հայաստանի Թագաւորը, ընդարձակ կիսաշրջանակի մը վրայ կը գըտնուէր վերը յիշուած Հռոմի հպատակ աէ–րութիւններու խումբը, որոնք իրենց ա–

[41] Տրդատ անունով՝ Ալաններու յաղթող, կ'ապրի հայ ժողովրդական երգերու մէջ, որոնք պատարդուած են Մ. Խորենացիէն։ Տես Մարկուարտ ZDMG. 49, 639։

[42] Նոյն կերպ կարգադրութիւն եղած էր 3ին Բատաւական պետութեան համար. տես վարը Գլ. Ե, յօդ. 4։

ունել կամ նուաղ հելլենական մշակոյթովը հռոմէական պետութեան հաւատարմութեան յատուկ գրաւական մը կը ներկայացնէին։ Ամանոսէ մինչեւ Եփրատ կը տարածուէր Կոմագենէի թագաւորութիւնը, որուն մայրաքաղաքին՝ Սամոսատի մօտ, Եդեսիա տանող ճամբան գետը կը կարէր։ Որովհետեւ պետութեան անմիջական երկիրը Կոմագենէի հիւսիսէն սահմանակից Մելիտինէ նահանգին մէջ մինչեւ գետը կը յառաջանար, անոր համար ալ ճիշդ հոս՝ երկու աշխարհակալներու խառնուրդին մօտ 54ին ստեղծուած Ծոփքի թագաւորութիւնը՝ մինչեւ գետին արեւելեան եզերքը ընդարձակուած էր եւ իր մէջը կը պարփակէր Արածանիայ ստորին հոսանքին լայնատարած հովիտը Տաւրոսէն մինչեւ Անտիտաւրոս[43]. Հոս կը թագաւորէր ասորի Սոյեմոս Եմեսացին։

Հիւսիսէն Մելիտինէի կը միանար նոյնպէս 54ին կազմուած Փոքր Հայքի թագաւորութիւնը։ Հայաստանի հիւսիսային սահմանին եւ Սեւ Ծովու, Ալիսի եւ վրական սահմանին միջեւ տարածուող երկիրը 37էն սկսած իբրեւ Պոնտական թագաւորութիւն կը կառավարուէր Պողեմոն Բ.էն, որուն տունը սերունդներէ ի վեր կայսրներուն հաւատարմութեամբ ծառայած էր։ Այս շղթան կը փակուէր վրական պետութեամբ, որուն

[43] Տես Լ. Հաուպտ Armenien 511 էջ.։

Թագաւորը Փառանձեմ Արշակունիներուն անհաշտ թշնամին էր։

Նախատեսելով եւ այն պարագան, թէ Հայաստան հակառակ ամէն նախազգուշութեան, կրնար օր մը ձեռքէ ելլել, անշուշտ 59 տարուոյն մէջ՝ կարեւոր սահմանակիրճերը եւ դիտանոցները փորձ դաշնակիցներու ապահով ձեռքերու յանձնուեցան։ Սակայն Պէտոսի կնքած դաշինքով այս բոլոր ձեռք բերուածները դարձեալ ոչնչացան. մասնաւորաբար Մծբինը, Զաբդէայի շրջանը նոյն միջոցին վերստին Հայկական դարձաւ[44]։

Արեւելքի մէջ Հռոմէական զինուորական ուժին կորիզը կը կազմէին սակայն հինգ ասորական լեգէոնները, որոնք այժմ Կորբուղոնի փորձ առաջնորդութեան տակ միակ բանակի մը վերածուեցան։ Այս լեգէոններն էին՝ Գ. Գաղղիականը եւ Զ. Երկաթապատը, այն երկու ընտրեալ գունդերն, որոնք իր հրամատարութեան ներքեւ Հայաստանը գրաւած էին[45]. ասոնց վրայ կ'աւելնային Ժ. Փրեթենեանը, որուն մեծագոյն մասը արշաւին մասնակցած էր[45]. Նուազագոյն արժէք մ'ունէին մինչայժմեան ասորական երկու լեգէոնները Գ. Սկիւթականը[45] եւ ԺԲ. Շանթահարը, որոնց աշա–

44 Այս բացայայտ կը տեսնուի Կորբուղոնի վերջին (63ին) արշաւին պատմութիւնէն. տես Գլ. Ա, յօդ. 3։

45 Այս լեգէոններու մասին տես վերը յօդ. 1։

ջինը երկար ժամանակ զօրանոցի կեանք անցուցած էր Միւսիայի մէջ եւ Եփրատի քով, մինչ երկրորդը մեծ քաղաքներու մէջ ապականուած ասորական ասիականական գունդի մը բոլոր պակասութիւնները իր վրան ունէր [46]։

Հռոմէական ոյժը 59 տարուայ նոր կարգադրութեամբ Ասիոյ մէջ ամրապէս հաստատուած էր քան երբ եւ իցէ։ Վստահ ռազմական հզօր պատրաստութիւններու վրայ, վստահ դարձեալ փորձ առաջնորդին զինուորական եւ քաղաքագիտական կարողութիւններուն վրայ՝ կրնար Հռոմի կառավարութիւնը հանգիստ սպասել՝ պարթեւվրկանեան մարտին անդրադարձ ընթացքին եւ պարթեւական անխուսափելի յարձակումին։

Սակայն այս շրջանին համար հայկական հարցին լուսաւոր լուծումը գտնուած էր Տիգրանը դահ բարձրացնելով։ Կորբուլոնի յետոյ բռնած ընթացքէն ակնյայտնի կ'երեւայ, թէ սոսկ չէր դիտուած Ներոնեան արեւելեան քաղաքականութեան մեծ նպատակէն հրաժարում մը [47] եւ քաղաքականութեան միջոցներու մէջ սկզբունքային փոփոխութիւն մը տեղի չէր ունեցած։

Երբ 61ին Պարթեւներու հետ մեծ հա-

46 Այս գունդին անարժէքութեան մասին հմմտ. Տակ. Տ. ԺԳ. 35։

47 Այդպէս կը համարի դեռ Հէնդերսըն, Ներոն 177։

չուեյարդարը սկսաւ, Համէջական կուսակալը նոխ գինադադար մը կնքեց, որուն բացէ ի բաց արտայայտուած նպատակն էր Հայ գահը Տրդատի յանձնուելուն հիման վրայ խաղաղութեան բանակցութիւնները կատարել: Կորբուլոնի այս ուշադրաւ քայլը իր մեկնութիւնը կը գտնէ երբ ընդունինք, թէ նա այն գիտակցութիւնն ունէր թէ իր կառավարութեան կամքին համաձայն կը գործէր: Իսկ կառավարութիւնը անոր այս ընթացքին գլացաւ իր հաւանութիւնը, ոչ թէ սկզբունքային առարկութիւններ ունենալուն համար, այլ միայն զի զինուորական մանաւանդ պայմանները այդ լուծումին անւականութիւնը խնդրական կը դարձնէին**:

Արեւելեան մարտադաշտով դէպքերութեան ուժերը ուրիշ ձեռնարկութեանց համար տրամադրելի դարձան. ի մասնաւորի մեծապէս օգտուեցաւ անոնցմէ Կլաուդիոսի բրիտանական ձեռնարկը, որ պարթեւական հողերուն պատճառաւ շատ անտեսուած էր։ Սակայն երբ Սուետոնիոս իր յաջողութիւններէն քաջալերուած կ'ուզէր Բրիտանիայի մէջ վերջին ընդդիմութիւններն ալ խորտակելով պետութեան դէպի հիւսիս տարածումն յառաջացնել, պարթեւական պատերազմը սկսաւ վերստին իր ազդեցութիւնն ունենալ կենդրոնին վրայ եւ Հռոմ՝ որ մէտ չէր բազմաթիւ զօրա-

** Տես Գլ. Ա. յօդ. 3:

վարի մը կամքով երկճակատ մարտի մը մէջ մղուիլ, ստիպուեցաւ Սուետոնիոսը եւ կանչել: Անոր յաջորդը Պետրոնիոս Տուրպիլիանոս կայսերական հրահանգին համաձայն կրցաւ տարուան մը մէջ առանց պետութեան վնասին՝ խաղաղացնել Բրիտանիան:

Ներոնի բրիտանական քաղաքականութեան մէջ ցանցառ դեղեւկութեամբ կը յայտաբերուի արեւելեան քաղաքականութեան առաջնորդութիւնը: Արեւելքի մէջ տիրող հանդարտութիւնն անմիջապէս գալի կը դառնայ Բրիտանիայի մէջ անճող գործունէութեամբ. եւ երբ պարթեւական կռուեր կը վերարծածի, Բրիտանիայի կուսակալին կամքին խաղաղարար քաղաքականութիւն մը կը հարկադրուի: Հռոմի մէջ կենդրոնը թէ՛ հոս եւ թէ՛ արեւելքի մէջ դէպքերուն ընթացքը կը սահմանէ եւ թոյլ չի տար ո՛չ Սուետոնիոս Պաւղինոսի եւ ո՛չ ալ Կորբուլոնի, որ վարչութիւնը իր ձեռքէն առնուն:

Պարթեւական մարտադաշտը ժամանակ ձգած է նաեւ ուրիշ ուղղութեամբ մը քաղաքական ծանրակշիռ ձեռնարկի մը: Այս տարիներուն կ՚իյնայ Ներոնի հարաւ-արեւելեան քաղաքականութեան սկզբնաւորութիւնը, որ կատարեալ յեղաշրջում մը յառաջացուցած է Հնդկաստանի հետ վաճառականութեան յարաբերութիւններու մէջ:

Սակայն հոս մեզի համար կարեւորագոյն են այս միջոցին իրանեան երկիրներու

մէջ կատարուող խռովութիւնները, որոնք պարթեւական պատերազմին 61ին վերսկսելուն շարժառիթը դարձան։ Նկատենք մէկ կողմանէ պարթեւական–վրկանեան՝ միւս կողմանէ վրկանեան–հռոմէական յարաբերութիւնները։ Վրկանեան արեւելքը 55 տարուայ դարձեան նախկին արքային՝ Վարդանի, մէկ որդին առաջնորդ առնելով՝ ապստամբած էր արեւմուտքի մէջ արմատացած Վաղարշ մեծ արքային դէմ [49]։ Բաժանումը պետութեան այս մասին, որուն ուժերուն վրայ յեցած էր գրեթէ կէս դարու տեւողութեամբ՝ մինչեւ 51 տարին հարստութեան իշխող երիցագոյն գիծը, ծանր դժբախտութիւն մըն էր եւ մեծ արքային այնչափ յաջողութեամբ սկսած Հայկական ձեռնարկը կը ջղատէր կատարելապէս։ Այսպէս Կորբուլոն կրցաւ համեմատաբար ոչինչ ուժով պարթեւ օժանդակութենէ զուրկ Տրդատը՝ Հայաստանէն արտաքսել։

Սակայն Հռոմ–պարթեւական պատերազմին ծագումը, վրկանեան շարժման դեկավարներուն մէջ ընդարձակ քաղաքական ծրագրի մը հաստատուելուն նպաստեց։ Անոնք որոշեցին Հռոմի կայսեր՝ հասարակաց թշնամւոյն դէմ՝ դաշնակցութիւն մը առաջարկել։ Մերիվալ կ'ուզէ տալ նախաձեռնութիւնը Հռոմի վերագրել [50], սակայն

[49] Տես վարը Գլ. Բ, յօդ. Զ։
[50] Ch. Merivale, History of the Romans under the empire. 1868—1876. V, 336.

Հէնդըրսըն այս կարծիքը կը մերժէ իբրեւ անստուգելի[51]: Այն՝ ինչ որ Արտաւան, Վարդան եւ Գոտարզ թագաւորներու շրջանին՝ վրկանեան ազնուականութեան վրայ ըրաւ ըսինք[52], հաւանական կ'երեւցնեն թէ այսպիսի խորհուրդի մը յղացումը քաղաքագիտօրէն մեծապէս զարգացած այդ շրջանակներուն մէջ հնարաւոր էր:

Այս բանակցութիւններու մասին ակնարկութիւնք մեզի հասած է միայն այն պատճառաւ, որ Կորբուլոն իբրեւ տեղակալ Ասորիքի փոխարքային վրկանեան դեսպաններու դարձին մինչեւ Եփրատի գետաբերանը ուղեկից ուժեր տրամադրած է: Այս ակնարկութիւնք կը գտնենք Լեգերդայի առումին 58ի աշնան եւ 59ի գարնան Տրդատի Հայաստան յարձակումին միջեւ[53], բատ այսմ դեսպանները իրենց վերադարձին 58ի աշնան կամ 59ի գարնան Ասորիքէն անցած են. Միջերկրական ծովու նաւագնացութեան յարաբերութիւնները սակայն առաջին հնարաւորութեան ի նպաստ կը խօսին. եւ հետեւաբար վրկան դեսպանները 58ի գարնան պէտք է բանակցած ըլլան դաշնակցութեան խնդրոյ մասին:

Տակիտոսի այս կարճ ակնարկութենէն կ'իմանանք միայն թէ վրկանները առաջարկ ըրած են, սակայն թէ դաշնակցութիւնք

51 Մերոն 169, 193:
52 Տես վերը Գլ. Բ, յօդ. 2:
53 Տակիտ. Տ. ԺԴ. 25:

կնքուած է՝ այդ չներեւար։ Եւ չեմ տարակուսիր թէ համաձայնութիւնը գլուխ եկած է, վասն զի առաջարկուած համագործակցութեան օգուտները շատ մեծ էին հռոմէական քաղաքականութեան համար, որու միակ նպատակն էր ըմբոստ Պարթեւներու ընկճումը։ Վրկան դաշնակցութիւնը անգնահատելի արժէք մը կը ներկայացնէր, որուն շահագործումը Հռոմի կրնար ապահովել անուական գերակշռութիւն մը պարթեւ պետութեան վրայ[54]։

Վրկան պետութիւնն իր կարգին կը գտնուէր արդէն նոյն դժուարին կացութեան մէջ, որ դաշնակցութեամբ պիտի ստեղծուէր Պարթեւ պետութեան համար։ Իր արեւմտեան սահմաններու վրայ պարթեւներու հետ բուռն կռուի մէջ էր, իսկ արեւելքի մէջ իր գաւառներէն մին միւսին ետեւէն կը կորսնցնէր, որոնք հնդկապարթեւական պետութենէ առաջ եկած Արիական (Areia) իշխանութեան ձեռքը կ՚անցնէին։ Ի վերջոյ իրեն ձեռքը մնացին միայն Կասպից ծովու եզրապատանները եւ Էլբուրզէ հարաւ՝ պարթեւ բարձրաւանդակին այն երկրամասը, որ սահմանակից է անոնց, այնպէս որ կարծես միայն ժամանակի խնդիր էր, որ նորակազմ պետութիւնն իր երկու հզօր դրացիներու մէջ փշրուէր։

Այս պարագաներուս մէջ 61 տարուայ

[54] Մանդրաման՝ ա. Գլ. Ա, յօդ. 4 եւ Գլ. Բ, յօդ. 2, 3։

խաղաղութեան կնքումը, որով վրկանեան պետութիւնը պարթեւներէն կը ճանչուէր, բոլորովին անյուսալի բարեբախտութիւն մըն էր։ Վաղարշ այս ծանրակշիռ զիջումն ըրաւ, վասն զի Հայոց Տիգրան Թագաւորին 60ին Ատրպատական մանեկան մէջ կը տեսնէր Հռոմէական յարձակողականի մը նախակարապետը, եւ կ'ուզէր Հռոմէական պատերազմի պարագային ուրիշ կողմանէ ապահով ըլլալ։ Ուրեմն Հայաստանի համար մեծամարդը՝ վրկան պետութեան ապաստարանը եղած է եւ արեւմտեան սահմանին վրայ տիրող խաղաղութիւնը՝ այժմ տուած է անոր կորուսած արեւելեան նահանգներն ետ դարձնելու [55]։

Այս յարաբերութիւնները սակայն մեր աչքէն կը զնեն այն հարցը, թէ արդեօք ինչ էր ուղղութիւնը եւ նպատակը Հռոմէական քաղաքականութեան, որ ճիշդ այս միջոցին արեւելքի մէջ իշխող մարտադաշտին վերջ դրած է։ Մինչեւ հիմայ այնպէս համարուած է, թէ Տիգրանի Ատրպատական յարձակիլը ինքնակամ քայլ մը եղած է, որ Հռոմէական պետութիւնը հակառակ կամաւորութեան կամքին անկչռելի բարդութիւններու մէջ դահավիժած է. այս տեսակէտին ապացոյցը գտնել կարծուած է ցայժմ Տիգրանի դաւաճանութեան մէջ [56]։

---

[55] Տակիտ. Տ. ԺԵ. 2։

[56] Հռոմ. Պատմ. Ե. 388, Հէնդըրըրն, Ներոն 182 էջ.։

Սակայն այս տեսութիւնն իր մէջ անհասա-նականութեան որոշ տարրեր կը կրէ · Ներո-նեան արեւելեան քաղաքականութեան վրայ մեր նոր համապատկերը բոլորովին ուրիշ տեսակէտներ ընդունելի կ'երեւցնէ ։

Հայաստանի Թագաւորը Հռոմի առա-ստուած մըն էր, որ իր դժուարին կացու-թիւնը միայն հռոմէական հզօր զօրավիգով զէնքերովը կրնար հաստատուն պահել · Եր-կրին ներսկան ալ էր հռոմէական բանակնե-րուն հրամանատարն էր, որ արդէն վրացի Միհրդատի ժամանակ որոշիչ դերակատարն էր[57] ։ Եթէ արդէն այն միջոցին դաշնակից բանակին առաջնորդը Թագաւորին վրայ կ'իշխէր, այս ուրեմն հռոմէական հրամա-նատարին գիրքը լեգէոնականներու Հայաս-տան փոխադրուելէն յետոյ շատ աւելի ու-ժեղացած պէտք է ըլլայ · տար օրինակն ունինք Բոսպորի պետութեան մէջ[58] ։ Տի-գրան չէր կրնար առանց հրամանատարին գիտութեան ակիզբ ընել որ եւ իցէ մարտա-կան ձեռնարկութեան մը եւ այս անկարելի էր ի մասնաւորի մեծ արքային մէկ աւատա-տուին դէմ ։ Իսկ հրամանատարն իր կար-գին, այսպիսի կարեւոր խնդրոյ մը մէջ ա-ռանց իրմէ վերադասներին՝ Ասորիքի փոխար-

---

57 Այս իրողութիւնը ամէնէն աւելի պայծառ կ'երեւայ Միհրդատի անկումին դէպքէն, որ բա-նակեալի հրամանատար՝ կաշառառակ Կելոս Պոլ-լիոնի մատնութեամբ կործանեցաւ ։ Տակիտ. Տ. ԺԲ, 45 յջ.։

58 Տես վարը Գլ. Բ, յօդ. 4 ։

քայլին՝ հաւանութեան չի կրնար գործած ըլլալ. ուրեմն կու գանք այն եզրակացութեան, թէ դէպի Ատրպատականյ յարձակումը Կորրուգանի կամքովը եւ գիտութեամբը կատարուած է։ Այս եզրակացութիւնը այնտեղն միայն կարելի է ուժաթափ ընել, երբ հնարաւոր գտնուայ ցուցնել, թէ այն նոր բարդութիւնը վարիչներու ծրագիրները խանգարած է։

Իմ տեսութեանս համեմատ միակ պատճառը կրնայ ըլլալ, այն ենթադրական հին վարկածը, թէ Հռոմ այն համոզումն ունէր, որ Հայաստանի գրաւումը եւ Տիգրանի դակալութիւնը բաղձալի ու տեւական վիճակը ստեղծած է։ Այս տեսութեամբ՝ Ատրպատական յարձակելով պարթեւական պատերազմին գրգռապատճառը գտնայը, ընական է՝ անխորհուրդ [illegible] անհներելի ինքնագլուխ մէկ գործը պէտք է համարուի. տակայն կարծեմ ճիշդ այս ենթադրութիւնը վերը[59] ուժաթափ ըրած եմ։ 59 տարուայ կարգադրութիւնը ժամանակաւոր էր միայն, որ գրացի պետութեան հետ նոր հաշուեյարդարով մը վերջնականի պիտի վերածուէր. իրողութիւններու այնպիսի վիճակ մը արուած էր, որ կարելի էր հանգիստ սպասել հաշուեյարդարի ժամանակին եւ եթէ հարկ տեսնուէր այդ ժամանակն անձամբ որոշել։

Եթէ այս տեսակէտէն դիտենք, բոլորո-

[59] Տես վերը յօդ. 2։

մին ուրիշ կերպարանք կը ստանայ դէպի Ատրպատական յարձակումը. այն տպաւորութիւնը կ'ունենանք, թէ Տիգրան պարթեւական պատերազմին առիթ տուած է, վասն զի Կորբուլոն վայրկեանը եկած կը համարէր: Եւ իմ կարծիքովս, կրնանք դնել նաեւ այն պատճառները, որոնք Կորբուլոնը պարթեւական մարտին վերարծարծումին դրդած են: Վրկան դաշնակիցներու ապստամբող պարտութիւնը պարթեւ հակառակորդին նշանակելի ուժեղացում մը կը խոստանար եւ միանգամայն ծանրապէս խնդրական կը դարձնէր պարթեւ պետութեան բաժանումին վրայ հաստատուած տիրապետութեան ծրագիրները: Հայաստանի համար մենամարտը պատահարար չէ որ վրկանեան պետութեան ապստամբութիւնը ընկած է, այլ Հռոմ դիտմամբ ձեռնարկած է զայն, որպէս զի վրկաններու վերստին պարթեւ պետութեան իշխանութեան ենթարկուիլն արգելէ:

Եւ թէ այս քաղաքականութեան թելերը, ոչ թէ մինչեւ Կորբուլոն, այլ մինչեւ շատ աւելի բարձր շրջանակներ կը հասնին, կը տեսնուի դարձեալ արեւելքի դէպքերուն բրիտանական իրադարձութիւններու վրայ առաջ բերած ազդեցութենէն: Յուլիոս Կլասիկիանոս գործակատարը, որուն կայսրը պաշտօն տուած էր Սուետոնիոսը չափաւոր եւ հանդարտ քաղաքականութեան մը յար-

գործելու, արդէն 60 տարւոյ աշնան Բրի-տանիա հասած էր։

Ուրեմն Հռոմի մէջ Տիգրանի յարձա-կողականէն քանի մը շաբաթ վերջը արդէն կը կանխատեսէին թէ պարթեւական մարտը 61 տարւոյ գարնան պիտի սկսէր։ Այսպէս ուրեմն ո՛չ թէ անխոհեմ ատատտութի մը անժամանակ մէկ արարքը, այլ իմաստուն կառավարութեան մը հեռատես հաշիւները պարթեւական նոր պատերազմի մը սկիզբը տուած են։

## 3· Պարթեւական պատերազմը եւ խաղաղու-թիւնը։

Հայաստանի թագաւորը 60ի գարնան Ատրպատականի վրայ յարձակում գործեց, եւ այդ՝ մերձաւոր արեւելքի երկու մեծ պե-տութիւններու միջեւ նոր մարտի մը զրգա-պատճառ եղաւ։ Վաղարշակ ազդանշանը հասկցաւ եւ ըմբռնեց թէ վճռական ժամը հնչած էր։ Հռոմի ապատանայիքը զինքն երկ-ընտրանքի մը առջեւ կը դնէր․ պէտք էր կա՛մ Վրկաններու հետ խաղաղութիւն կնքել, որ միայն վերջին ապստամբութիւններու վեր-ջին մնացորդներու կորուստի գնով հնարա-ւոր էր, եւ կա՛մ Հռոմի հետ համաձայնու-թեան մը գալ, որ միայն Հայաստանէ հրա-ժարելով կարելի պիտի ըլլար։ Երկար դե-դեւումէ վերջը, Տրդատի եւ Ատրպատա-կանի Մոնոբազ թագաւորին ազդեցութեան

տակ՝ արիական արշաւը տուաւ արեւելքէն հրաժարիլ եւ Հռոմի դէմ պատերազմ մղել։ Այս արշաւը քաղաքագիտօրէն բացարձակապէս ուղիղ էր. եթէ յաջողէր արեւմուտքի հզօրագոյն ուժը յաղթահարել, այն ատեն Վրկանեան անկախութեան վերջին ժամը հնչած էր։ Որովհետեւ այդ յաջողութիւնը չունեցաւ, 60—61ի ձմրան խաղաղութիւնը՝ պետութեան բաժանման սկզբնակէտը դարձաւ. սակայն նոյն իսկ նպաստաւոր ելքի մը պարագային այդ բաժանումը՝ ժամանակի ընթացքին անխուսափելի էր[60]։

Առանց անդրադայն պատերազմական յաջողութեան Վաղարշ 61ի գարնան Հայաստանի դէմ կռիւը սկսաւ[61]. Տիգրիսի անցումէն առաջ՝ ուրեմն Մարտի վերջերը[62] Տրդատ, Ատրպատականի Մոնոբազ թագաւորը եւ մեծ արքային թիկնապահներու առաջնորդը՝ Մոնեսէս մինչեւ Տիգրանակերտ յառաջացան, որպէս զի այդ կարեւոր դիրքը յարձակումով գրաւեն։ Պարթեւական գլխաւոր զօրաբանակը Մծբինի քով համախմբուեցաւ, որպէս զի երկու գետերուն նուաճումէն ետքը՝ մէկ մասը Հայաստան մտնէ եւ միւսը կա՛մ յարձակումով եւ կա՛մ պաշտպանողականով Եփրատի գիծը ապահովէ[63]։

---

[60] Տես վարը Գլ. Ա, յօդ. 4։

[61] Տակիտ. Տ. ԺԵ. 2։

[62] Դժուարին ժամանակագրութեան մասին տես Klio ԺԹ.։

[63] Կորբուլոն իր ամենակատարութեան մէջ, որ

Կորբուլոն երկար ժամանակէ ի վեր իր ռազմական ծրագիրը պատրաստած եւ ամէն կարեւոր միջոց ձեռք առած էր[64]: Արդէն 60 տարւոյն աշնան[65] երկու յանդուգն լեգէոնները՝ Դ. Սկիւթականը եւ ԺԲ. Շանթահարը[66] Տիգրանակերտի ուղեփակ անտառին ամրութիւններու մէջ հաստատուած էին: Ասոնք՝ Վեստիոս Բոլանոսի եւ Լ. Վերուղանոս Սեւերոսի առաջնորդութեան տակ՝ 61ի գարնան՝ Տրդատի եւ անոր ատրպատական օգնական գունդին, որ աւելի կիրթ էր լեռնամարտի մէջ, բոլոր ջանքերն ի դերեւ հանեցին եւ այսպէս Պարթեւներու առջեւ զգալի կերպով փակեցին Հայաստանի Հարաւային մասերի դռներուն ճամբան[67]:

Զօրավարն այս միջոցին երեք ընտիր լեգէոններով՝ Գ. Գաղղիականն, Զ. Երկաթապատ եւ Ժ. Փրետենսեան, Եփրատի արեւմտեան եզերքին վրայ ամուր գիծ մը գրաւած էր, որ թէ՛ յարձակողականի եւ թէ՛

Պետոսի դժբախտութենէն յետոյ խմբագրուած է, կը պնդէ իր ձեռք առած միջոցներուն պաշտպանողական՝ իսկ թշնամւոյն ծրագիրներուն յարձակողական նկարագրին վրայ (Տակիտ. Տ. ԺԵ. 4): Նորագոյն հեղինակներն հոս Տակիտոսի հետեւած են, սակայն վարը պիտի տեսնենք թէ այս պարագայս ինքնապաշտպանութեան պատրուակ մըն էր:

[64] Տակիտ. Տ. ԺԵ. 3:

[65] Ասոնք Մարտին առջէն իրենց գիրքերուն վրայ էին:

[66] Հէնդերսըն, Ներոն, 180. ուղիղ կը դնէ թէ ասոնք Պետոսի լեգէոններն էին:

[67] Տակիտ. Տ. ԺԵ. 4:

պաշտպանողականի համար միայն նպաստաւոր ընտրուած էր։ Կորբուլոնի ռազմական ծրագիրները թէ՛ զօրամասերու բաժանումէն եւ թէ՛ յետագայ՝ մեծ արքային ուղարկուած՝ պատգամէն [68] ակնյայտնի կը տեսնուին։ Պաշտպանողական տկար թեւը Տիգրանակերտի քով՝ թշնամւոյն դէպի Հայաստան ծրագրած յարձակողականին իր առաջին դրոհին մէջ պիտի կասեցնէր։ Իսկ միւս երեք՝ միջին Եփրատի մօտ եղող յաղթավարժ լեգէոնները յաջողութեան լաւագոյն յոյսերով՝ Միջագետքէն պիտի կրկնէին Կրասոսի արշաւը։

Պատերազմը սկսելէ առաջ Կորբուլոն Հռոմի առաջարկած էր Հայկական բանակին համար փոխադրելու պատուիրակ մը կարգել [69], վասն զի ինքն ի վիճակի չէր Եփրատի մօտ գլխաւոր բանակին հրամանատարութեան հետ միանգամայն Հայաստանի պաշտպանութիւնը վարել։ Կորբուլոնի այս քայլը շատ զարմանալի երեւցած է եւ զանազան մեկնութիւններ փորձուած են։ Հռոմի մէջ խմբակ մը անոր այս վարմունքը կը ստգտանէր, վասն զի կը համարէր թէ Կորբուլոն Հայաստանի նուաճումով վաստկած իր համբաւը չէր ուզեր վտանգել՝ պարթեւական ամբողջ ուժին դէմ նոյն երկրին դժուարին

68 Տես քիչ մը վերը։
69 Տակիտ. Տ. ԺԵ. 3։

պաշտպանութիւնը իր վրայ առնելով[70]: Սակայն ինչպէս տեսանք իր ազգականաց բաղդին կերպարանութիւնն այսպիսի ենթադրութեան մը թոյլ չի տար: Նոր հեղինակներն մեծ մասով տարր չարժառիթը կը համարին Ներոնի հօր զօրավարներու դէմ անուցած դիւրագրգիռ կասկածը եւ կ'ենթադրեն թէ Կորբուղոն իր դեսպանին այս ունակութիւնը նկատի առնելով բաժանման առաջարկն ըրած է[71]: Մամսէն այս չարժառիթին աւելի հաւանական եղանակաւորում մը կու տայ, մասնանիշ ընելով այն իրական վտանգը, որ արքունի առն համար կրնար ծագիլ, եթէ արեւելեան ամբողջ բանակը ու-իշխանութեան կուսակալի մը ձեռքն իյնար[72]: Սակայն Շէնդրբրընի[73] հետ պէտք է ընդունիլ, թէ հրամանատարութեան համար զօրավարին տուած պատճառն է միակ ուղիղը: Գլխաւոր բանակէն այնչափ հեռաւորութեան վրայ անկախ գործող հիւսիսային զօրաբաժինը, որ իրեն մասնաւոր պաշտօնն ունէր, իրապէս կը կարօտէր ինքնակայ եւ կենդրոնացած վարչութեան մը: Երկու լեգէոնական պատուիրակութիւններու միանական վերին հրամանատարութիւնը պարզապէս անմամանակեայ կրնար ըլլալ, որուն կարելի եղածին չափ փութով պէտք է

[70] Տակիտ. Տ. ԺԵ. 6:
[71] Rawlinson, 274 յջ., Merivale, Է. 340:
[72] Համմ. Պամ. Է. 388:
[73] Նէրոն, 181:

վերջ տրուէր, Հայաստանի համար փոխարքե–տոր պատուիրակ մը առաքելով: Ներեկը, ինչպէս դէպքերու ընթացքէն կը տեսնուի, Կորբուլոնի ծրագիրներուն գործադրիչը միայն պիտի ըլլար եւ հայ սահմանները պիտի պաշտպանէր, մինչ Ասորիքի բանակը յարձակողական գրոհով մը դէպի Միջագետք պիտի յառաջանար:

Գործողութեան ձեռնարկելէ առաջ Հռոմէացի հրամանատարն անգամ մ'եւս փորձեց բանակցութեան ճամբան՝ հակառակ պարագային բռնամիջոցներ սպառնալով[74]: Մծբին պատգամաւոր մը ուղարկեց, որ հայ հողին պարպումը պիտի պահանջէր բացարձակապէս. իսկ եթէ պարթեւ արքայն այս պահանջը մերժէր, հռոմէական բանակն անյապաղ պիտի անցնէր սահմանը:

Վաղարշ գիտակից էր, թէ ի՛նչ պիտի արժէր իրեն պատանդացուած հռոմէական յարձակողականը. իր լաւագոյն գունդերն առանց յաջողութեան յոյսի մը Տիգրանակերտի առջեւ գամուած էին, իսկ այրուձին, որ իր բանակին գլխաւոր ուժը կը կազմէր, մեծապէս տուժած էր իր կարողութենէն մարախներու արշաւէ մը, որոնք երիվարներու կերն ոչնչացուցած էին: Այս պարագաներուն մէջ տարական ընտիր լեղէոններու յարձակողականը դէպի Մծբին յառաջացութեան ամէն երաշխաւորութիւն կը կրէր իր մէջը:

74 Տակիտ. Տ. Ժե. 5:

Եթէ թագաւորը հռոմէացի զօրավարին պայմանները չընդունէր, զինուորական ծանր պարտութիւն մը անխուսափելի էր՝ Արշաւանքը սկսելէն առաջ ուղարկուած պատգամաւորութենէն ուղիղ եզրակացուց նա թէ Կորբուլոն պատրաստ էր բանակցութեան մտնելու. ուստի հրամայեց որ Տիգրանակերտի պաշարումն բարձուի եւ Մծբնի բանակը լուծուի. միանգամայն յայտարարեց, թէ պատրաստ է Հռոմ պատգամաւորութիւն մը ուղարկելու, որպէս զի կայսեր խաղաղութեան խնդիրք ներկայացնէր, այն պայմանով, որ Հայաստանի գահը Տրդատի տրուէր։ Կորբուլոն այս պայմաններով զինադադար կնքեց ու ինքն ալ իր ուժերը Հայաստանէն ետ քաշեց. ասոր անհրաժեշտ հետեւութիւնն եղաւ Տիգրանի թագաւորին անկումը։ Այսպէս ուրեմն կ'երեւար թէ հռոմէական կառավարութեան տարիներէ ի վեր հետապնդած նպատակը ձեռք բերուած էր, առանց զինուորական ուժի ազդու միջամտութեան եւ միայն սպառնալիքի ազդեցութեամբ։

Սակայն Կորբուլոնի այս ընթացքը թէ՛ հիներէն եւ թէ նորերէն կասկածի ենթարկուած է [75]։ Ամէն պարագայի մէջ մեծ սխալ մըն էր, հակառակորդին կողմէ Հռոմի քաղաքական պայմանաւորութիւններու պարտաւո-

[75] Տակիտ. Տ. ժե. 6 (Կյաւիոս Թուփոսի համառօտագին), Schiller 142. Հով. Պատ. Ե. 388. Հ. Ներոն 182։

րէշ յանձնառութիւն մը ապահովելէ առաջ՝ մարտադիրը ձեռնահան ընելը։ Կորբուղան կը կարծէր, թէ պիտի կարենար, ինչպէս 57ին, զինուորական ցոյցով մը քաղաքական որոշիչ յաջողութիւն մը ձեռք բերել եւ հարկ պիտի չըլլար իրական ճակատամարտ մը մղել[76]։ Սակայն եւ այնպէս իր ամբողջ վարմունքը այն ատեն միայն հասկանալի պիտի ըլլայ, երբ ընդունինք թէ ունէր պատճառ համարելու, որ կառավարութիւնը դեռ մինչ իբրեւ վերջին նպատակ կը դիտէր, Հայաստանի ազդեցութեան Հռոմի եւ Տիգրանի միջեւ բաժանումը՝ այն կերպով, ինչպէս իրականացաւ երկու տարի յետոյ։ Միայն այս պարագային կրնար յուսալ, որ դաշնադրութիւնը եւ խնդրական երկրամասին պարպումը, վճռուած ատեանին հաւանութեան պիտի արժանանար։

Այս մեկնութեան ստուգութիւնը կը հետեւի անուղղակի այն մեծ դժուարութիւններէն, որոնց կը բախէինք որ եւ իցէ ուրիշ մեկնութեան մը պարագային։ Կլաւիոս Թուփիոս անիրաւուած է այս նշանաւոր մարդուն շատ անպատշաճ չարամտութիւններ վերագրել[77]։ Բաւականին չարամտութիւն չեն կրնար համարուիլ ո՛չ նախանձը Կապադովկեան իր պաշտօնակցին հանդէպ, որուն պատերազմի մէջ առաջնորդելու դեր մը միայն վերա-

[76] Տես վերը յղ. 1։
[77] Տակիտ. Տ. ժե. 6։

պահուած էր, եւ ո՛չ այլ պարթեւական մարտին ծանրութեան երկիւղը, քանի որ այս կռիւը, մարդկօրէն դատելով՝ մանաւանդ թէ նոր մեծագոյն յաջողութիւն մը հաւանական կ'երեւցնէր: Տիգրանի անկարողութիւնը եւ այդ իսկ պատճառաւ հայ բանակին սպառնացող վտանգը, զոր կը տեսնէ Հէնդրբարն[78] գոհացուցիչ մեկնութիւն մը չէ: Զինուորական միջոցներէ աւելի քաղաքագիտականներն նախապատիւ համարելը, Կորբուլոնի քաղաքագիտութեան նկարագրական մէկ յատկութիւնն է: Կառավարութիւնն ալ ծագած սխալն անմիջապէս ուղղած է, առանց վտանգաւոր զօրավարին վրայէն իր վստահութիւնը բառնալու:

Հռոմ՝ պարթեւական մարտին սկսած ըլլալուն իրական լուրին վրայ, անյապաղ՝ կամապաշտ Սուետոնիոս Պաւղինոսի տեղ 61 տարւոյ կարգաւոր հիւպատոսներէն մին՝ Գ. Պետրոնիոս Տուրպիլիանոսը նշանակեց, որ մեծ յաջողութեամբ՝ ընդարձակ տարծումի մը ձգտող շարժումներուն սեղմումի դժուարին գործը ի գլուխ հանեց[79]: Իսկ միւս հիպատը՝ Կեսեննիոս Պետոսը Պարթեւներու դէմ Կորբուլոնի ընկեր կարգեց[80]. Պետոս հարաւային Հայաստանի ուղեփակ

---

[78] Ներոն, 182. Տիգրան հռոմէական կառավարութեան ձեռքը ճկուն եւ պիտանի գործիք մըն էր. տես վերը յօդ. 2:
[79] Տես վերը յօդ. 2:
[80] Տակիտ. Տ. ԺԵ. 6:

գիրքերու հրամանատարութիւնը եւ հոն զե-տեղուած բանակները պիտի առանձնէր։

Այս միջոցին է որ կը հասնէր Հռոմ զի-նադադարի եւ Հայաստանի պարպումին լուրը. Հետեւութիւններն իսկոյն կանխատեսնուեցան եւ որոշուեցաւ ըստ կարգի զանոնք արգիլել։ Հայաստանը իբրեւ դրաւ ձեռքէ հանուելէ յետոյ՝ անընդունելի էր Վա-ղարշի առաջարկը, որով հայ Արշակունիները Հռոմի պետութեան հանդէպ աւատատուի դերի մէջ պիտի մնային։ Զինուորական արժանապատուութեան պատճառներով ան-հրաժեշտ էր նախապէս երկրին վերադար-ձումը, վասն զի առով միայն նոր ենթա-կումը իրական բովանդակութիւն պիտի ու-նենար։ Թուցէ նոյն իսկ պէտք պիտի ըլլար բաց դաշտի վրայ տարուած յաղթանակ մը, Պարթեւներուն Հռոմի գերիվերութիւնը ակնյայտնի հանդիսացնելու համար։ Ուստի Պետոսի տրուեցան՝ երկու ոչ-լիարժէք ա-րեւելեան լեգէոններու կից, Մէօզիայէն սահմանական կռիւներու մէջ փորձուած Ե. Մակեդոնականը եւ Հայաստանը վերա-գրաւելու եւ նահանգի վերածելու հրահան-գով փութով դէպի արեւելք ճամբայ հանուե-ցաւ[81]։

Ասով ըստ երեւոյթին արեւելեան քաղա-քականութեան վերստին նոր նպատակակէտ

[81] Տակիտ. Տ. Անդ. Ժամանակագրութեան մա-սին տ. Klio ԺԹ։

մը կը դրուէր [82]. սակայն այս միայն արտաքին երեւոյթն էր, իրականին Պետոս ալ գիտէր, թէ Տրդատի անձին հետ կապուած լուծումը, որ այժմ այնպէս սաստկութեամբ կը մերժուէր, ի վերջոյ ամբողջ իրադարձութեան յետին հանգրուանը պիտի դառնար։ Վասն զի ինքն ալ, պաշտօնի անցնելէ քանի մը ամիս յետոյ, նոյն հիման վրայ դաշինք մը կնքեց, որուն անշուշտ կը կարծէր թէ կառավարութիւնը այսպիսի համաձայնութեան մը բացարձակապէս հակառակ չէր [83]։ Իմ կարծիքովս նոր կուսակալին արուած հրահանգը բոլորովին այլազգ մեկնելու է։ Կառավարութիւնը անով կը ճանչնար՝ Կորբուղոնի կատարած Տիգրանի գահընկեցութիւնը, բայց վերադարձուած երկրին վրայ վերջնական որոշումը իրեն կը վերապահէր։ Մշակոյթէ այնքան զուրկ աշխարհի մը մէջ նոր նահանգ մը կատարեալ անդորրացումէ յետոյ կարելի էր յանձնել թէ՛ աւատառու իշխանի մը եւ թէ՛ կուսակալի մը։ Հռոմ սովոր էր Ասիայի մէջ այսպիսի երկիրներու վրայ անուղղակի վարչութիւնը նախապատուի համարել, ուստի եւ Պետոսի արուած հրահանգը որ եւ է կերպով չէր կանխեր երկրին իշխանութիւնը Տրդատի յանձնելու հնարաւորութիւնը։

---

[82] Հէնդըրսըն, Ներոն, 182. այս ըմբռնումէն գերուած է։
[83] Տես քիչ մը վարը։

Դեռ 61ի աշնան, եթէ կարելի էր, պէտք է դրաւուէին այն դիրքերը, ուսկից գարնան Կորբուլոն Պարթեւներուն այնքան ազդուապէս պատասխանած էր[84]։ Կորբուլոն իր երեք լեգէոններովն անմիջապէս Եփրատն անցաւ եւ ձախ եզերքին ամուր բանակ դրաւ, որ կայուն կամուրջներով Հռոմէական գետեզրին հետ կապուեցաւ. առով մինչ ի վճռակի եղան 62ի գարնան, առանց նկատի առնելու Եփրատի բարձրանալը, պարթեւ բանակին դէմ Միջագետքի մէջ յարձակողական սկսելու[85]։

Պետոսի վճռակուած էր իր ձեռքին եղած երկու լեգէոններով անյապաղ Մոփքէն եւ Տաւրոսի կիրճերէն անցնելով Տիգրանակերտ փութալ, որպէս զի Պարթեւներէ յառաջ այդ կարեւոր ուղեփակ ամրութիւնները հասնէր։ Բայց հոս արդէն առաջին անգամ ի տես բերաւ նա իր անկարողութիւնը. վասն զի Հռոմ-արեւմտեան՝ պատերազմէ խնայուած՝ նահանգներու մէջ աւարառութեամբ եւ յափշտակութեամբ այնքան երկար զբաղեցաւ, որ Տրդատ զինքը կանխեց։ Ուստի տախտուած Արածանւոյ հովիտը քաշուեցաւ եւ հոն ալ ձմերեց[86]։ Տաւրոսի բարձունքին

---

84 Ժամանակագրութեան համար տ. Klio ԺԲ։

85 Տաց. Տ. ԺԵ. Ց. Հոս խնդիրն Կորբուլոնի հաւատարմին պէս պաշտպանողական դիրք մը գրաւելու վրայ չէր, այլ յարձակողականի մը պատրաստութեան հարց էր։

86 Տաց. Տ. ԺԵ. Տ. Իր յառաջխաղացումին ծրա–

վրայ առաջադրած մը հաստատելով կը կարծէր թէ ամէն անակնկալներէ ապահովուած էր, եւ իր բանակը Սամոսատի ու Թոնդէայի քովերն այնքան անյարմար տեղաւորեց, որ լեռներու վրայէն յառաջացող թշնամի գունդ մը պէտք է որ հայրենիքի հետ ունեցած յարաբերութիւնը խզէր[87]: Մէջբերայէն օգնութեան առնուած իր նոր կիրթ գունդը դարձաւ միայն կրնար անգր հանել եւ ձմեռն Պոնտոս անցուց[88]:

Այնման արշաւի ծրագիրը մասամբ միայն յաջողած էր եւ 62 տարւոյ մարտին նախապայմանները աւելի աննպաստ դարձած էին: Թէեւ Կորբուլոն իր յարձակող բանակովը մասդրուած դիրքերը հասած էր, սակայն Տիգրանակերտ Պարթեւներու ձեռքն ինկած, եւ հարաւային Հայաստանի պաշտպանողական գիծը Տաւրոսի կիրճերուն վրայ ետ մղուած էր: Այս պարագաներու տակ հիւսիսային բանակն իսկ ամփոփուած էր իր արշաւն սկսել հզօր բանակէ մը պաշտպանուած Տիգրանակերտի բերդին վրայ յարձակողականով մը, որուն յաջողութիւնը՝ գունդերուն մէկ մասին անարժէքութեանը պատճառաւ անապահով էր: Այսպէս ուրեմն Պետոսի յանդուգն անհոգութիւնը պատերազմի ծրագրին հիմունքները վտանգած էր:

գիրն Կորբուլոնին էր, բայց նա անոր գործադրութեան անմասնակ էր:

87 Տես Հէնդրըրսն J. Phil. 28, 271 յէջ:

88 Տակ. Տ. ԺԵ. 10:

Վաղարշ լաւ գիտեր թէ, Կորբուլոնի հայկական կռիւներու մէջ մարզուած լեգէոնները յարձակողական, հակառակ հիւսիսային ճակատին վրայ այս անդական ձախողութեան, կուզէր դարձեալ ի նպաստ Հռոմի դիտի վճռէր։ Ներքին գծին օգտագործումը, որմէ միայն յաջողութեան որոշ յոյս մը ունէր, շուտով անհնարին պիտի դառնար, եթէ Ասորիքի բանակը պէտք եղած երագութեամբ գործի ձեռնարկէր[89]։ Վասն զի Տաւրոսի շղթան անյաղթելի արգելք մըն էր, եթէ ամբողջ հռոմէական հիւսիսային բանակը անոր անցքերը գրաւած պահէր։ Իսկ եթէ Կորբուլոն հայկական կռիւներու փորձառութիւններով նախապատրաստուած Միջագետքին արշաւի մը ձեռնարկէր, ինչպէս սպառնացած էր նախընթաց տարին հռոմայեցի զօրավարը, մարդկային դատումով կարելի չէր ակարացած պարթեւ պետութեան ուժերովը ու միջոցներով այդ արշաւն կասեցնել, որ իր յաջող ընթացքին պիտի բռնադատէր Պարթեւները հեռացնել Տիգրիսի հիւսիսային եզերքն իսկ պարպելու։

Որչափ Պարթեւ արքայն, եթէ չէր ուզեր որ թշնամին պարտադրէր իրեն գործելու

[89] Հէնդերսըն, Ներոն, 158 յջ.։ Հակառակ այս ռազմական պարագաներու իր շատ խոհեմ մեկնաբանութեան, մեծ կարեւորութիւն կ'երեւի տալ ներքին գծին առաւելութիւններուն, որոնք ուրիշ յաջող պարագաներու զուգընթացութեամբը միայն 61ի ձմեռը Պարթեւին յաղթանակին պատճառ եղան։

օրէնքներն, պէտք էր ձմեռնային դադարը օգտագործել՝ որպէս զի եթէ հնար էր իրարմէ տարանջատ Հռոմէական բանակներէն մին խորտակէր։ 62 տարւոյն Հռոմէական յատակագիծը խանգարելու յարմար միջոց մըն էր, Պետոսի դեռ ոչ լիաթիւ, վատ առաջնորդուած եւ ձմեռոցներու մէջ ցրուած բանակաբաժնին վրայ ամբողջ ուժով ձմեռնային յարձակում մը գործել, եւ ա՛յն այնպիսի ժամու մը, երբ ոչ ոք յարձակողականէ մը կը կասկածէր։ Պետոսի զինուորական անկարողութիւնը եւ անձնական տկարութիւնը, իր գունդերու անարժէքութիւնը եւ Հռոմէացի երկու զօրավարներու տկար համամտութիւնը պատճառ եղան, որ այս յանդուգն ձեռնարկը յուսացուածէն շատ աւելի յաջող արդիւնք մը ունենայ։ Յաղթական պատգամաւորութեան, որու ձեռքով Պետոս անձնատուութեամբ իր կայսերական տիրոջ Հայկական մարտին յաջող վերջաւորութիւնը կ՚աւետէր[90], մեկնելէն քանի մը շաբաթ յետոյ՝ Հռոմէական հիւսիսային բանակաբաժինը ջախջախուած՝ եւ բուռն կռիւներու առարկայ երկիրը Պարթեւներու դիւրաւին աւար մը դարձած էր։

Հռոմէական զէնքերու այս ծանր անյաջողութեան յանցապարտութեան հարցը արդէն նոյն միջոցին շատ խնդիր յուզած է եւ

[90] Տակ. Տ. ԺԵ. 8։

դեռ մինչ չուզեր Հանդարտիլ: Դյուկոս Թուսիոս[91], Տիլլէր[92] եւ Մոմզէն[93] կը կարծեն թէ Կորբուլոն զինուորը թոյլ տուած է, որ իր Հակառակորդը այս աղէտին ենթարկուի: Նա Հայաստանի վերադարձման զժուարին գործին Համար երկու վատթարագոյն լեգէոնները տրամադրած, պաշարուածին օգնութեան կոչը ի սկզբան բոլորովին անտեսած, իսկ յետոյ Հեռաւոր ճամբաններէ շատ դանդաղօրէն դէպի Հիւսիս յառաջացած է, որպէս զի կարօտութիւնն սաստկանայ եւ ազատութեան գործն ըստ կարելւոյն պայծառ Հանդիսանայ. եւ վերջապէս այս վարմունքով դիտած է կատարելութեան ծրագիրներուն Հակառակ՝ իր Հայկական քաղաքականութիւնը յառաջ մղել:

Կարելի չէ՝ Հոս Կորբուլոնի Հանդէպ եղածէն աւելի յանդգնոյն զօրավար մը եւ քաղաքագէտ մը վարկաբեկել: Արդէն Հէնդըրըն[94] ապացուցած է թէ, Պարթեւներու յաջողած յանկարծահասութիւնը եւ Պետոսի գլխակորոյս վարմունքը մեծ աղէտին որոշիչ գործօններն եղած են: Պետոս դեռ անցուդարձին վերահաս չեղած՝ Տաւրոսի վրայ պաշարուած կիրճերն գրաւուած էին, եւ կ'երեւայ որ անոր որոշման մը յան-

---

[91] Տակ. Տ. ժե. 10, տես Klio ժԹ:
[92] Ներոն 157:
[93] Հռոմ. Պատմ. Ե. 389:
[94] J. Phil. 28. 283 յջ. Ներոն 183 յջ.:

գեղէն յառաջ նախահայրին հետ համարձակու-թիւնն ալ կորուսած էր[95]։ Ուստի իրեն իբրեւ միակ ելք մնաց Ռանդէա ամփոփուիլ եւ Լորրիք գտնուող իր ընկերակցէն օժանդա-կութիւն խնդրել։ Առաջնորդին հետ դայն-արժէք գունդերն ալ խելացնորեցան․ ա-նակնկալ դժբախտութիւնք եւ ցրտաշունչ Հայաստանի մէջ պաշարման նեղութիւններ շատ ծանր փորձ էին անոնց համար։ Վար-չութեան վրայ վստահութեան կորուստով կարգի ու կանոնի ամէն կապ լուծուեցաւ ապստամբութեամբ եւ դասալքութեամբ։

Կորրուդան՝ Պարթեւին յանդուգն ապ-մական արարքին վրայ իր ընկերակցէն հասած առաջին լուրը՝ իրաւացի կասկածով լսեց եւ անոր իրաց վիճակին նկատմամբ կազմած ըմբռնումը ի սկզբան երկիւղի եւ ակամայի-ական դատաստանի պակասութեանը վե-րադրեց եւ այդ պատճառաւ նախ եւ առաջ քանի մը հազարի ընտրեալ զօրաբաժին մը անոր օգնութեան ուղարկեց[96]։ Բայց երբ պարտեալին ամէն կասկած արտաքրող եր-կրորդ տագնապի կոչը հասաւ՝ որոշեց ա-գու օգնութիւն փութացնել։ Ցառաջապահ գունդը ճեպընթաց դէպի հիւսիս մղուեցաւ, եւ կամրջադլուխներու վրայ փութաթիւ ապ-

95 Հ· Ներոն, 187։

96 Այս դանդաղումը եւ առաջին օգնութեան ան-բաւականութիւնը Կորրուդանի յանցակցութեան բա-ժինը կը կազմեն։

հակներ ձգելէ յետոյ ամբողջ բանակը դէպի Հայաստան ճամբայ հանուեցաւ: Որքան կը մօտենային Մելիտինէի մօտ Եփրատի անցքին այնքան կը քաղաքերծուէր պարտութեան մեծութիւնը փախստականներու. Թուին աճումով, որոնք պաշարուած բանակը իր բախտին ձգած էին [97]:

Ապստամբ գունդերու եւ տագնապող թշնամւոյն միջեւ Պետոս իր վերջին ոյժն իսկ կորսնցուցած՝ եւ օգնութեան փութացող բանակին հասնելէն երեք օր առաջ Ռանդէայի ամօթաբեր ցինաթափութեան դաշինքը կնքած էր [98]: Պաշարուածներուն ազատ ելք տրուեցաւ, բայց առանց զէնքի եւ մթերքի. միանգամայն երդումով խոստացաւ զօրավարը, որ Հռոմի մէջ նոր բանակցութեան մը վերջանալէն առաջ, ոչ մէկ հռոմէացի Հայաստան ոտք պիտի կոխէր: Կ'ապահովցնէր թէ կայսերական կառավարութիւնը դեռ միշտ պատրաստ էր Տրդատը Հայաստանի թագաւոր ճանչնալու [99]:

Այս պարագաներուն մէջ Կորբուլոն ստիպուած էր իր գինակցին պայմանաւորումները ճանչնալ. իր բանակն Ասորիք վերադարձնել եւ մեծ արքային հետ ինքն ալ դի-

---

[97] Տակ. Տ. ԺԵ. 12:

[98] Տակ. Տ. ԺԵ. 13 յճ. Դիոն ԿԲ. 20 յճ.:

[99] Տակ. Տ. ԺԵ. 14. կը կասկածի Կորբուլոնի տուած վերջին տեղեկութեան ճշդութեան վրայ. բայց Մոմզէն կը դիտէ թէ այս փաստահայցումը յամենայն դէպս հնարաւորութեան սահմանին մէջ է:

նադադար կնքեց։ Այդ դաշինքով յաջողեցաւ Միջագետքի կամրջագլուխներէն հրաժարումի փոխարէն՝ Հայաստանի պարթեւ թագաւորի կէն պարպումը ձեռք բերել. այսով գոնէ արտաքուստ 61ի գարնան զինուորական դիրքը վերահաստատուած էր[100]։

Պարթեւական խաղաղութեան նոր պատգամաւորութիւնը 62ի գարնան Հռոմ հասաւ եւ կայսեր ներկայացուց մեծ արքային խնդրագիր նամակը[101]։ Վաղարշ այդ նամակին մէջ սպառնալէս կը շեշտէր Պարթեւներու զինուորական դերակշռութիւնը, որ վերջին տարւոյն դէպքերէն պայծառ կ՚երեւար. սակայն ի սէր ընդհանուր խաղաղութեան պատրաստ էր՝ իր եղբօր ձեռքը գտնուող Հայաստանի վրայ՝ կայսեր գերիշխանութիւնը ճանչնալ։ Տրդատ սիրով պիտի ուզէր իր հպատակութեան հաւաստիքը տալու համար Հռոմ ուղեւորիլ, եթէ իր քահանայութիւնն ծովագնացութեան արգելք չըլլար. կայսրը գոհանալու էր, եթէ նա արեւելքի լեգէոններու բանակէտին մէջ կայսեր պատկերին առջեւ երկրպագութիւն կատարէր։

Մեծ արքան այսով տարուայ մը ընթացքին երկրորդ անգամ ըլլալով հայկական ա՛յն քաղաքականութեան հողը կը մտնէր, զոր Հռոմի կառավարութիւնը եօթը տարիէ

[100] Տակ. Տ. ԺԵ. 17։

[101] Տակ. Տ. ԺԵ. 24, ժամանակի մասին տ. Klio ԺԲ։

ի վեր կը հետապնդէր։ Սակայն Պետրոսի աղէտով յառաջ եկած գինուորական կացութիւնը, երեւութապէս միայն՝ այնքան մեծ գիջողութիւն մը աւելի անընդունելի կ՚ընէր, քան որ էր նախընթաց տարին։ Առաջարկուած կարգադրութիւնը կայսեր անուանական գերիշխանութիւն մը միայն պիտի ընծայր, յիրականին բոլորովին անկախ՝ արշականք անէ, Հայաստանի թագաւորին վրայ· ուստի համարժէք պիտի գտնար երկրին Պարթեւներու՝ անկատար բաղադրուած՝ յանձնումի մը։ Եւ որովհետեւ Հռոմ տակաւ չէր ուզեր զոհանալ[102], պատերազմը բացայայտ էր։ Կայսրը յայտարարեց թէ պատրաստ էր Տրդատի տալու Հայաստանը, այն պայմանով միայն, որ նա անձամբ Հռոմի մէջ հպատակութեան ցոյց կատարէ[103], այս պատասխանով եւ առատ նուէրներով՝ պատգամաւորները ետ դրկուեցան[104]։

Այսպիսի պահանջ մը սակայն զինուորական կացութեան նախապէս յեղաշրջումով մը միայն կարելի էր ընդունելի ընել։ Ուստի արեւելեան մարտին մէջ յաջող հանդիսացած առաջնորդը Կորբուղոն՝ արտակարգ լիազօրութիւններ ստացաւ, որպէս զի

---

102 Այս պատճառով ալ Հէնդըրըրնի (Ներոն 160) սահմանաւորումը կը մերժեմ. Հռոմի կառավարութիւնը անուանական գերիշխանութենէ աւելի բան մը կը ձգտէր։
103 Դիոն, ԿԲ. 21 ։
104 Տակ. Տ. ԺԵ. 25։

դէպի Հայաստան արշաւով մը հռոմէական զէնքերու գերազանցութիւնը ի վեր հանէ եւ տալ համաձայնութեան վերջին արգելքն ալ քանդելու։ Իբրեւ կուսակալ Կապադովկիոյի եւ Գաղատիոյի՝ Աքիլա գտնուող հռոմէական բովանդակ բանակներու վրայ վերին հրամանատար կարգուեցաւ եւ Ասիոյի բոլոր կուսակալները հրահանգ ստացան իր զինուորական հրամաններուն հնազանդելու [105]։ Վեց լեգէոններուն վրայ, որոնք արդէն իր նոր հրամանատարական սահմանին մէջ կը գտնուէին, աւելցան դեռ մեծ զօրախմբումներ․ Պաննոնիայէն ամբողջ լեգէոն մը՝ ԺԵ․ Ապողինարեանը, արեւելք փոխադրուեցաւ։ Բաց ասոր արեւելեան բանակին աւելցան Իլիրական միւս զօրք՝ եւ եգիպտական երկու լեգէոններէն պահեստի գունդերը՝ որոնք հաւանօրէն լեգէոնի մը ամբողջութիւնը կը կազմէին [106]։ Կորբուլոն այս ահեղ բանակը, որ կանոնաւոր գունդերու տեսակէտով՝ Հռենոսի բանակին կը հաւասարէր, երկու խումբի բաժնեց․ Եփրատի սահմանի պաշտպանման համար Ասորիքի նոր կուսակալին, Կ․ Կեստիոս Գալլոսի յանձնեց երեք լեգէոն՝ կիրթ Ժ․ Փրետենսեանը եւ Գետասի երկու լեգէոնները Դ․ Սկիւթականը

[105] Տակ․ Տ․ ԺԵ․ 25․ Հրամանատարութեան նկարագրի մասին տես Գլ․ Գ, յօդ․ 1։

[106] Իւրաքանչիւր լեգէոնէն սովորաբար 1000 անձ, ուրեմն հօս ընդ ամէնը 6000 հոգի։

եւ ԺԲ. Շանթահարը. իսկ ինքը 62ի ամառը եւ յաջորդ ձմեռը Մելիտինէի մէջ հզօր յարձակողական բանակ մը համախմբեց[107], հոն հաւաքեց Ասորիքէ եւ Պոնտոսէ նաեւ Դ. Դաղղիականը, Ե. Մակեդոնականը եւ Զ. Երկաթապատը. յետոյ ասոնց վրայ աւելցան Պաննոնիայէն՝ ԺԵ. Ապոլլինարեանը եւ Իլլիրիայի եւ Եգիպտոսի ընտրեալ գունդերը: Արեւելքի հպատակ թագաւորները իրենց ուժերով ամբողջացուցին բանակը, որ առ նուազն 60.000 զինուոր ունեցած ըլլալու է[108]: 63ի գարնան Հայաստան արշաւելու համար ամէն բան կազմ եւ պատրաստ էր[109]: Պարթեւք նոր կացութենէն անմիջապէս անհրաժեշտ հետեւութիւնները հանեց: Կը յուսար թէ իր յանկարծական յաղթանակին ազդեցութեան ճնշումով Հռոմէական գերիշխանութեան կերպական ճանաչումովը պիտի գերծանէր, սակայն երբ Հռոմ որոշած էր պայքարի առաւել ուժերու համախմբումով կռիւն վերսկսիլ, այլ եւս այդ նպատակին հասնիլ կարելի չէր: Կորբուլոն դարձեալ ամկի յայտեր առաւա անոր եւ արշաւանքի վայրկենին անգամ մը եւս ծանօթ պահանջներն դրաւ[101]: Ասոր վրայ մեծ ար-

[107] Ապստամբութիւններն եւ փոխադրութիւնները այսքան երկար ժամանակի կարօտ էին: Տես Klio ԺԲ:

[108] Տակ. Տ. ԺԵ. 26:

[109] Դիոնի մօտ կայսեր արեւելքի ուղեւորութենէն եւ կենայր սխալմամբ առաջ հետ կապուած է:

[110] Դիոն ԿԲ. 23. 1. Համառօտ Տակ. Տ. ԺԵ. 27:

քան որոշեց ընդունիլ այն պայմանները, որոնց հետ Հռոմ Տրդատի ճանաչումը եւ խաղաղութիւնը կը կապէր: Ոչ թէ պարթեւ ազնուականներ, այլ մեծ արքային եւ անոր հայ գահին հետամուտ եղբօրը պատգամաւորներն էին որ դիմաւորեցին լեգէոնները, երբ անոնք ստորին Արածանիի հովիտէն Հայաստան կը մտնէին[111]: Կորբուլոն անոնց բանագնացներ ընկերացուց, որպէս զի խաղաղութեան պայմանները սահմանաւորեն: Տրդատ Հայաստանի թագաւոր պիտի ըլլար, եթէ նա Հռոմ երթալով կայսեր ձեռքէն թագն առնէր. մեծ արքային կ'առաջարկուէր դաշնակցութիւն մը, որ իրեն պիտի տար խաղաղութիւն եւ հանդստութիւն ներքին բոլոր դժուարութիւններու յաղթել կարենալու համար: Բանակցութիւններու միջոցին այս անգամ զինադադար չշնորհուեցաւ[112]:

Վաղարշի պատասխանը նպաստաւոր եղաւ եւ զինադադար խնդրեց: Տրդատ հռոմէացի զօրավարին աղաչեց, որ նշանակէ տեսակցութեան ժամը եւ վայրը: Ռանդէայի մէջ, ուր Պետոս հռոմէական զէնքերն այնքան ծանրապէս արատաւորած էր, տեղի ունեցաւ պատմական հանդիպումը[113]: Կոր-

[111] Տակ. Տ. ժե. 27:

[112] Այս ամբողջ ընթացքը կը ցուցնէ, թէ Կորբուլոն այս անգամ քաղաքական խիստ հրահանգներ ունէր եւ անոնց կը հետեւէր:

[113] Տակ. Տ. ժե. 28—31:

բուղանի օգնականը Տի. Յուլիոս Աղեքսանդր եւ կուսակալին փեսան Աննիոս Վինիկիանոս իբրեւ պատանդ Հայ բանակը գացին, որպէս զի երաշխաւորեն Թագաւորին ապահովութիւնը՝ անոր Հռոմէական բանակին մէջ գտնուած ժամանակ։ Հոն՝ Պարթեւաց արքային եղբայրը կայսեր պատկերին առջեւ գետնեղեց Հայկական արքայախոյրը եւ խոստացաւ այլ եւս չկրել զայն, մինչեւ որ Հռոմի մէջ կայսեր ձեռքէն իսկ ընդունէր թագը։ Տրդատին դուստրը դաշինքին պահպանումին գրաւ առնուեցաւ, եւ դաշինքին կնքումը ծանուցուեցաւ կայսեր իր նոր հպատակին խոնարհական մէկ գրութեամբը։ Յետոյ Տրդատ հեռացաւ երկրէն, պարթեւական հայրենիքին մէջ հպատակութեան ցոյցի ճամբորդութեան պատրաստութիւնները տեսնելու համար։ Կորբուլոն իր լեգէոններով Ծոփքի մէջ մնաց, ուր Գ. Գաղղիականը 64 տարւոյն մէջ միջնաբերդ մը կանգնած է։ Խարբերդի Հայ մատուռի մը մէջ գտնուած երկու արձանագրութիւնները[114] կենդանի վկաներ են որ Հռոմէական զինուորական այժմ հոն վերստին տեւականօրէն ամրացած է[115]։

64 տարւոյ դարձան Կորբուլոն մեծ արքային հետ հանդիպում մը ունեցած է[116]։

---

114 CIL, III. 6741/42. Desau 232։

115 Տես Գլ. Գ., յօդ. Ձ։

116 Դիոնի ժամանակագրութեան մէջ պարթեւական մարտին գրուած ակզէն յայտնի կ'երեւայ ժամանակը. տես Klio ԺԹ։

*թէեւ Տակիտոս կը հաղորդէ միայն, թէ այդ տեսակցութեան ժամանակ Տրդատի Հռոմ ուղեւորութեան ձեւականութիւններն սահմանուեցան, եւ թէ անոր հռոմէական պետութեան մէջ գտնուած միջոցին հիւպատի աստիճան շնորհուեցաւ[117], սակայն ինքնայայտ է որ այդ հանդիպումին՝ Հռոմի եւ Տիգրանի մէջ խաղաղութիւնը կնքուեցաւ:*

*Այսպէս տասը տարուան տաժանելի աշխատանքէ վերջը Հռոմ իր նպատակին հասած էր: Պարթեւ արքան վերահաս եղած էր, թէ հռոմէական դրացուն հետ խաղաղական համաձայնութիւն մը եւ հայ երկրին վրայ ազդեցութեան բաժանում մը, քաղաքական այդ կենդրոնական հարցին՝ ամենաշահաւէտ լուծումն էր նոյն իսկ իր պետութեան համար: Տրդատի՝ Հռոմէական կայսեր առջեւ 66ի ամառը ըրած հպատակութեան ցոյցը, արեւելեան քաղաքականութեան նոր դարաշրջան մը բացած է, որ թէեւ կէս դար յետոյ Տրայանոսէ ընդմիջուեցաւ, սակայն անոր արկածախնդրութենէն յետոյ դարձեալ վերականաւ:*

### 4. Ներոնի պարթեւական քաղաքականութեան նպատակները եւ ուղիները:

*Ներոնի պարթեւական քաղաքականութեան ընթացքը մեր աչքերու առջեւէն հո–*

117 *Տակ. Տ. ժե. 31:*

ափին վրայ անհամեմատ մեծ թուով լեղէոններ պիտի կայէր։

Այս դրութեան հակառակ՝ որ նախընթաց վարչութեան արեւելեան խնդիրներու հանդէպ ցոյց տուած շահագրգռութեան պակասութեան պատճառաւ կատարեալ քայքայումի յանգած էր, նոր վարիչները ջանացած են նուազագոյն միջոցներով արեւելեան սահմանին վրայ մեծագոյն ապահովութեան հասնիլ։ Անոնք հետամուտ եղած են արեւելեան դրացւոյն հետ համաձայնութեան մը, որ պիտի հիմնուէր այնքան երկարատեւ կռուոյ առարկայ դարձած միջնաշխարհին մէջ՝ իրենց երկակողմանի ունեցած արդարացի շահերուն փոփոխակի ճանաչումին վրայ։ Երկու պետութիւններէն եւ ոչ մին կրնար միւսին թողուլ Հայաստանի վրայ միանակ տրամադրելու իրաւունքը․ ուստի փորձեցին ռազմագիտօրէն այնքան կարեւոր այս երկրին վրայ ազդեցութեան բաժանումով կայուն համաձայնութեան մը ելքը գտնել։ Հռոմ տրամադիր էր, պարթեւ թագաւորահանքին Հայաստանի տիրապետութիւնն ընդունիլ, եթէ նա ուզէր իբրեւ սատատու իշխան մը հռոմէական պետական դրութեան յարիլ։ Մոմսէն[118] առաջինն է, որ հակառակ Տակիտոսի եւ Դիոնկասիոսի ընդդիմադրութենէն ազդուած հնագոյն հե-

118 Հռ. Պատմ. Ե. 384 յջ.։

տախոյգներու՝ յօրինուած է քաղաքագիտական նոր դիտումին անկախ նկարագիրը եւ ներքին իրաւացիութիւնը։

Հէնդըրսըն[119] այս նոր ուղին՝ անուանական աւատատիրութեան քաղաքականութիւն կ՚անուանէ. եւ իրաւունք ունի, այն տեսակէտով որ Պարթեւներու արքայեղբօր վրայ հռոմէական գերիշխանութիւնն անհամաձայնութեան մը պարագային շատ խնդրական արժէք կրնար ներկայացնել։ Հայաստանն ամէն հաւանականութեամբ՝ այդ պարագային Հռոմի համար կորսուած էր, եթէ սահմանապահ գունդերն այնքան ուժեղ նախատեսուած չըլլային, որ կարենային անմիջապէս գրաւել երկիրը։ Հէնդըրսըն խնդիրն միայն հայկական կողմէն կը դիտէ։ Հայաստանի մէջ կատարուած մեծ զիջողութեան նպատակն էր Տիգրանի պետութեան հետ ընդարձակ քաղաքական հասկացողութիւն մը, որ եթէ գլխաւոր արգելքը բարձուէր ուրիշ ո եւ է դժուարութեան մը պիտի չծագէր։ Հայաստանի մէջ հռոմէական շահերու պաշտպանումը կը հետապնդուէր, ոչ թէ այդ երկրին վրայ որ եւ իցէ իշխանութեան մը եւ պարթեւական ազդեցութեան արտաքսումին ձգտելով, այլ արեւելքի մեծ պետութեան հետ վստահալից յարաբերութիւն մը հաստատելով։

[119] Ներոն 154 էջ.։

Ուրեմն նոր կառավարութիւնն արեւելքի մէջ ի սկզբան աշխարհակալութեան միտք չունէր· պիտի պահպանուէր երեք գետասահմաններու աւանդաւոր հին ծրագիրը, որ պետութեան անմիջական հողամասերը Հռենոսէ՝ Դանուբէ եւ Եփրատէ անդին չէր ուզէր ընդարձակել։ Սենեկա[120] այս գաղափարը՝ իր անկումէն ետքն ալ՝ հրապարակաւ պաշտպանած է, երբ Կայսրը որոշակէս արդէն ուրիշ ուղիներ մտած էր։ Նոր քաղաքականութիւնն աւելի իր միջոցներուն քան թէ նպատակակէտին մէջ կը խոտորի նախորդէն։ Պարթեւ դրացւոյն հետ հայկական խնդրոյ մասին վերջնական հաշուեյարդարին ընդհանուր խաղաղութեան եւ անտեսական զարգացման նոր դարաշրջանի մը ճամբան պիտի հարթէր· զայս արդէն Աւգոստոս իր կայսրութեան վախճանը եւ նպատակին անտեսած էր[121]։

Տասնամեայ մարտին ամբողջ յարատեւութիւններու մէջ անյողդողդ պահպանուած է նոր նպատակակէտը· այս իրողութիւնը չեն փոխեր նաեւ այն երեւութական շեղումները, որոնք տեղի ունեցան այն միջոցներուն, երբ հետապնդուած հակադրութիւնը դեռ անհասանելի էր։ Տրդատի ճանաչումին առաջարկը նախ երեւան կու գայ

[120] Qu. nat. I. praef.
[121] Աւգոստեան խաղաղութեան մասին տ. Gardthausen, Aug. I. 481, 509:

55ի, 56ի եւ 57ի բանակցութիւններու ժամանակ[122], 61ին Կորբուլոն զայն կ'ընդգրկէ, Ռանդէայի մէջ Պետոսի եւ 62ին Հռոմի մէջ պարթեւական պատգամաւորութեան բանակցութիւններուն խնդրոյ նիւթ կը դառնայ եւ ի վերջոյ 63ի ամառը խաղաղութեան դաշինքին հիմը կը կազմէ[123]։

Հայաստանի թագաւորութեան Տրդատի յանձնումին մէջ ոմանք ուզած են նոր գաղափարէն յետակացում մը եւ դէպի ազատական քաղաքականութիւնը յետադարձ մը տեսնել[124]։ Կորբուլոնեան 61ի դաշինքին մերժումը եւ անոր կցուած՝ Հայաստանը նահանգի վերածելու հրահանգը՝ Տրայանոսի հետապնդած ծրագիրներուն անդրադարձ մը համարուած է[125]։ Սակայն այդ երկու դէպքերն ալ տեսանելի նպատակներու փոփոխումը արդիւնք էր վայրկենին պահանջ եղող խոհեմական նկատումներու, եւ հրաժարում մը չէր նշանակեր գլխաւոր նպատակէն, որ վերջ ի վերջոյ ալ ձեռք բերուեցաւ։

Հայաստանի դրուածով վերջնական կարգաւորում մը ձեռք չէր բերուած, քանի որ Պարթեւ պետութիւնը մասնակից իսկ չէր եղած կռուին։ Տիգրանի թագաւորութիւնը կը նկատուէր միայն իբրեւ ատ-

122 Տես վերը յղ. 1։
123 Տես յղ. 3։
124 Ամէնէն վերջը Հէնդըրսըն, Ներոն, 177 էջ.։
125 Անդ, 182 էջ.։

ժամանակեայ լուծում մը, որով բառ կա-
րելոյն չափ դիւրանար Հռոմի համար վճռական մարտին կանխահոգութիւնը։ Բնական է որ այս պարագային ազատամեան քաղաքականութիւնը վերստին ձեռք առնուեցաւ[126], սակայն Հռոմէական ծրագրով Տիգրան պարզապէս Տրդատի տեղակալն էր, որ իր անիրաւախոհ վարմունքին պատճառաւ ժամանակաւորապէս կ'արգիլուէր իր արքայական իրաւունքներու գործադրութենէն։ Թէ՛ Կորբուլոն եւ թէ՛ կառավարութիւնը Տիգրանն անմիջապէս լքեցին, երբ Պարթեւներու հետ ծրագրուած համաձայնութեան դէպի հաւանականութիւն մը ներկայացաւ։ Վերը տեսանք թէ ինչպէս Կորբուլոն արդէն 61ի գարնան՝ վերստին քաղաքականութեան հին ուղին կը մտնէր[127]։

Հռոմէական կառավարութիւնն այդ միջոցին իր կուսակալը վարկաբեկած է, վասն զի իր կարծիքով վերջնական համաձայնութենէ առաջ խնդրական երկրին լրումով, նոր յարաբերութեան հողերանական էական նախապայման մը կը բարձուէր. սակայն Տիգրանի կամ ուրիշ հռոմէական արքանեակի մը վերահաստատումի խնդիր չկար, մանաւանդ թէ Պետոսի հրահանգ տրուեցաւ երկիրը վերադրաւել եւ նահանգի վերածել[127]։ Բայց նա ալ, Կորբուլոնի պէս, գի-

[126] Տես յաւ. 2։
[127] Տես յաւ. 3։

ուէր թէ Հռոմ կը ձգտէր Տրդատի վերջնա-
կան ճանաչումին յանգիլ, եւ իր պարտու-
թեան առեն այս ծանօթութիւնը օգտագոր-
ծած է եւ յայտարարած է թէ իր կառավարու-
թիւնը Արշակունիի մը Հայաստանի վրայ
թագաւորելուն հիմնական դժուարութիւն-
ներ չունի [127]: 62ի դարձան հռոմէական բա-
նակցութիւններն ալ բացայայտ կը ցուցնեն
թէ պարթեւական մարար՝ Տրդատի Հռոմէ
կախումին ձեւականութիւններու եւ անոնց
միջոցով արտայայտուած հռոմէական-պար-
թեւական յարաբերութիւններու համար կը
մղուէր [127]: Հարցը այն էր թէ արդեօք Հռոմի
գերիշխանութիւնը՝ երկրին Պարթեւներու
յանձնումին պատշաճ քողարկում մը միայն
պէտք էր ըլլալ, թէ թագի տուչութեան
ձեւականութիւններով Հռոմի՝ Հայաստանի
վրայ իշխանութեան մասնակցութիւնը՝ ա-
րեւելքի ժողովուրդներու դիւրազգած խառ-
նուածքին վրայ խորապէս պէտք էր դրոշ-
մուիլ:

Հռոմի կառավարութեան երկու կերպա-
կան տարրերու մէջ իր դերակայութիւնը
կ'ուզէր անտեսանելի ընել: Հայաստանի դրա-
ւումը գոնէ այնքան ատեն տեւելու էր,
մինչեւ որ թագադրահանդէսը հպատակութեան
ցոյցը կատարէր: Իսկ այդ հանդիսաւոր
դէպքը պէտք էր Հռոմ տեղի ունենալ, ուր
արշակունիները մինչ այն միայն իբրեւ կա-
լանաւոր եկած էին: Այս պահանջը պարգա-

պէս ձեւականութիւն մը համարուած է, որ ծանր դէպքի մը պարագային Հայաստանի աւատատուրին հաւատարմութեան ոչ մէկ գրաւական կու տար[128]։ Այս կարծիքը ի մէջ կը հանէ այն ձեւականութեան հիւսի-տարականներուս կողմէ գնահատանքի թե-րութիւնը, որ շատ յաճախ անհնարին կը դարձնէ մեզի արեւելեաններու զգացումներու հասկացողութիւնը։ Երկրին գրաւումը եւ թագաւորին ազատութիւնը դէպի թշնամ-ւոյն մայրաքաղաքը, հոն հպատակութեան խոնարհ ցոյց մը կատարելու համար, այն-պիսի իրողութիւններ են, որոնց նոյն ժո-ղովրդեան եւ անոր դրացիներու վրայ յա-ռաջ բերած բուռն տպաւորութեան վրայ մենք՝ Վերսայլի դաշինքի սերունդս՝ այլ եւս չենք կրնար տարակուսիլ։ Այսպիսի պայ-մաններ ընդունելի ընող թշնամւոյ մը ուժը, կը զարդարուէր փառաց պսակով մը, զոր եղ-ծանել ի վիճակի են իշխանութեան չարա-չար գործածութիւնը կամ ժամանակի երկա-րութիւնը միայն։

Արշակունիին Հռոմ ուղեւորութիւնն՝ ա-րեւելեան ժողովուրդներու վրայ իր ազդելիք այս հոգեբանական ազդեցութենէն զատ՝ եր-կրորդ նպատակի մը եւս պիտի ծառայէր։ Կայսրը՝ թագաւորն Հռոմի արքունիքը գտնուած պահուն, երախտեաց ապացոյցնե-

---

128 Հաս. Պատմ. Ե. 392 էջ։

բով առյցած է եւ անոր հետ բարեկամական յարաբերութեան մէջ մտած [129] ։ Անձնական այս լաւ յարաբերութիւնը, որ իր ազդեցութիւնը պիտի ունենար մեծ արքային հետ յարաբերութիւններու վրայ ալ, քաղաքագիտական կարեւոր միջոց մըն էր. վասն զի ճիշդ արեւելքի երկիրներու մէջ, ուր բռնակալ կառավարութիւններ կը տիրեն, արքայական բարեկամութիւններ միշտ դաշնակցութեանց լաւագոյն շաղախն եղած են։

Այս խոհեմ քաղաքականութեան արդիւնք եղած է իրապէս ալ պարթեւական բարեկամութիւնը. տեսանք թէ Կորբուլոն 63ին մեծ արքային դաշնակցութիւն մը առաջարկած է [130], եւ հետագայ իրադարձութեանց մէջ որոշ գծեր կը մատնանշեն թէ այդ դաշնակցութիւնը կնքուած է։ Յամենայն դէպս Ներոն փորձած է, Վաղարշի հետ յարաբերութիւններն ալ այն սիրալիր աստիճանին բարձրացնել, որու հասած էր Տրդատի յարաբերութիւնն՝ անոր Հռոմ այցելութեան ժամանակ։ Կրկին ու կրկին հրաւիրած է մեծ արքան Հռոմ այցելելու եւ երբ այդ զգուշաւոր իշխանը պատրաստակամութիւն չցուցուց, ժամադրութեան մը խօսք տուաւ, որ տեղի պիտի ունենար իր Ասիա ուղեւորութեան պարագային [131] ։

---

129 Դիոն ԿԳ. 1, 2—7. Տես Հ. Ներոն, 13։
130 Տես յօդ. 3։
131 Դիոն ԿԳ. 2. տես վարը Գլ. Գ, յօդ. 2։

Արշակունիին դաշնակցի բարեկամական զգացումները՝ կեսարներու վերջին շառաւիղին հանդէպ, անսահման էին եւ անոր անկումին իսկ չվերջացան[132]: Վեսպասիանոսի հանդէպ ալ պարթեւ արքան դաշնակցութեան վրայ՝ իբրեւ հիմնակէտը իր քաղաքականութեան, անյողդողդ հաստատ մնաց. Երբ նոր կայսրը իր գահակալութենէն անմիջապէս յետոյ մեծ արքային հետ յարաբերութեան մէջ մտաւ, Թագաւորը 40.000 ձիաւոր մարտիկներու օգնական գունդ մը առաջարկեց՝ անոր դէպի Հռոմ արշաւին համար[133]: Եւ ինչպէս որ հոս ինքը ազդու մարտակցութեան մը պատրաստակամութիւնը կը ցուցնէր, նոյնպէս ալ 76ին Ալաններու յարձակումի պարագային իր հռոմէացի դաշնակցէն՝ իշխանազունի մը առաջնորդութեան տակ՝ օգնական բանակ մը պահանջած է[134]: Իր այս փափագին մերժումէն յառաջ եկած է երկու վեհապետներու բարեկամական յարաբերութեան առաջին պղտորումը:

Եթէ 64ին նոր կայսութեան քաղաքական եւոր այսպէս գոհացուցիչ կարգաւորում

[132] Ծերակոյտէն պահանջեց Ներոնի յիշատակը պատուել (տ. Ս. Ներոն, 57): Երբ 20 տարի յետոյ արեւելքի մէջ կեղծ Ներոն մը երեւան ելաւ, անոր մասին կը պատմուի. favorabile eius nomen apud Parthos fuit (անդ):

[133] Տես Վեսպասիանոս, 6:

[134] Տես Dom 2. Յովսեփոս վասն Հրէական պատերազմին է, 245—250:

մը դրած էր, բայց զինուորական ապահո-վութիւնն ալ չէր անտեսուած. 64ին Կոր-բուլոն տարին Արտաշատայ վրայ այժմեան Խարբերդի մօտ իր դերարժէք Գ. Գալլիա-կան լեգէոնին միջնաբերդ մը կառուցանել տուած էր[135]: Իսկ 73ին Հռոմէական գունդ մը Վրաստան կը գտնուէր[136]: Անոնք կը մատնանշեն այն ամրական զօրութեան երկու ծայրակէտները, զորս Կորբուլոն խաղա-ղութեան կնքումէն յետոյ հաստատած էր՝ Հայաստանի ստատուքոյին հաստատու-թիւնը ամէն պարագայի մէջ ապահովելու համար[137]: Տակաւին կը մնայ թէ 69ին ամբողջ Հայկական սահմանին երկարութեան գոյութիւն ունէր այս բազմամարդ ամրոց-ներու գօտին[138], որ սակայն բան չէր եթէ ոչ մեզի 59 տարիէն ծանօթ հպատակ պետու-թիւններէ կազմուած շղթային նոր յարաբե-րութեան ճարպիկ պատշաճեցումը[139]: Հռո-մէական այն գունդերը, որոնք Տիգրանի իշ-խանութեան ժամանակ Հայաստան կը գտնու-էին, Հելլենական ազդեցութեան ենթակայ դրացի պետութիւններու մէջ՝ Կոմմագենէէ մինչեւ Վրաստան՝ սահմանաբերդերու շղթ-

---

135 Տես վերը յօդ. 3:
136 CIL. III. 6052:
137 Ներոնի վերջին տարիներուն Փոքր Ասիա գտնուող զինուորական ուժերու մասին տես Գլ. Գ. յօդ. 1:
138 Տակ. Պատմ. Բ. 6:
139 Տես վերը յօդ. 2:

թայի մը մէջ ամփոփուած էին: Անուանա-
կան պետութիւններուն զինուորական ուժե-
ղացումը պարթեւ իշխանէ մը կառավարուած
Հայաստանի վրայ հռոմէական ազդեցու-
թեան դուռը բաց պիտի պահէր:

Ուրեմն մեծ պատերազմը Հռոմի կա-
ռավարութեան փափագին համեմատ վերջ
գտած էր համաձայնական խաղաղութեան
մը կնքումով: Իսկ եթէ Հռոմի պետու-
թեան ի նպաստ շատ կարեւոր ուժերու տե-
ղափոխութիւն մը յառաջ եկաւ անկէ, ասոր
պատճառն եղած է Վրկանեան ապստամբու-
թեան համընթացութիւնը, որ այդ վճռական
վայրկեանին Արշակունի պետութիւնը անկա-
րացուցած է:

Պարթեւական խնդրոյն ամբողջ տեւո-
ղութեան Հռոմ վայելած է թշնամւոյն հիւ-
սիս-արեւելեան դրացւոյն զինուորական հա-
մարձակութեան մեծարժէք առաւելու-
թիւններն եւ ասոնք էին դրդապատճառը, որ
դար մը յետոյ Անտոնինոս Պիոսը Վրկաննե-
րու հետ յարաբերութեան առաջնորդած
են[140]: Մինչ մեծ արքան իր բոլոր ուժերուն
կը կարօտէր ապստամբութիւնը արեւելքի
իր բոյնին մէջ ճզմելու համար, առդին
հռոմէական բանակը կրցաւ դիւրութեամբ
Հայաստանը գրաւել եւ այդ երկրին մէջ ամ-
րապէս խարսխուիլ:

Պարթեւական պետութեան երկու դրա-

[140] Aur. Vict. epit ԺԵ. 4:

ցիներու համագործակցութիւնը 58ին դաշնակցութեան մը կնքումին առաջնորդած է· Վրկանեան նոր պետութեան վրայ Հռոմի անուական պաշտպանութիւնը, որ անձուկ դինակցութեան մը նկարագիրն ունէր, ազդեցիկ դէնք մըն էր Պարթեւներու դէմ։ Առաջարկուած դաշինքին զինուորական, քաղաքական եւ տնտեսական առաւելութիւններն, որոնց վրայ յետոյ մանրամասնորէն պիտի խօսինք[141], Հռոմէական պետութեան համար այնքան մեծ էին, որ չեմ տարակուսիր անոր կնքուելուն վրայ, թէեւ այդ մեզի եւ ոչ ուրեք մը աւանդուած է։

Վրկաններու երկրին Հռոմի պաշտպանութեան ենթարկուելովը, արդէն աղուանեան երեք դեւերու սահմանին ծրագիրը խորամանկուած էր· եւ նոր յաջորդութիւնները հռոմէական քաղաքականութեան ինքնաբերաբար նոր ուղիներ կ'առաջնորդէին։ Վրկանեան դաշինքը եւ Հնդկաստանի վաճառականութեան Ակսումեան պետութեան կողմանէ վտանգումը՝ բնադատած են Ներոնի կառավարութիւնն արեւելեան աշխարհակալութեան ուղին մանելու· Հրէական պատերազմը եւ արեւմտաքի ապստամբութիւնը արգելք եղած են այդ աշխարհակալութեան կատարեալ հաստատութեան եւ յաջողութեան։

[141] Տես Գլ. Բ, յօդ. 2 եւ 3։

Վրկաններու պարթեւական պետութենէն անջատումին առաւելութիւններէն չզրկուելու փափագը՝ նախ սահմանած է Պարթեւական մարտին վերսկսելու ժամանակակէտը[142]. եւ այդ նոյն մարտին եւ խաղաղութեան դաշինքին նոր երանգաւորում մը տուած։ Պարթեւ արքան 61ին իր զէնքերն Հռոմի դէմ դարձուցած էր որպէս զի ազատէ ինք զինքը հռոմէական սպառնացող շրջափակումէն, որ կը ձեւաւորուէր Հայաստանի գրաւումով եւ Վրկաններու դաշնակցութեամբ։ Սակայն հակառակ իր Ռանդէյի յանկարծակի ձեռք բերած արդիւնքին՝ չէ յաջողած իր այս մտադրութեան մէջ։ Արեւմուտքի մէջ՝ ստիպուած էր գոհանալ իր եղբօր անձին մէջ՝ իբրեւ հռոմէական հովանաւոր Հայաստանի, հզօրագոյն դրացի պետութեան բարեացակամութեան զօրեղ ապահովութիւն մը շահելով, իսկ արեւելքի մէջ 61ին ճանչցուած վրկանեան պետութիւնը այլ եւս կարելի չէր ջնջել։

Հռոմէական-պարթեւական դաշնակցութիւնն ալ այս տեսակէտէն դիտուելով մասնաւոր նրբերանգ մը կը ստանայ. երկու արշակունիներ այժմ արդէն հռոմէական իշխանութեան շրջանակին մէջ ողակուած էին։ Անոնցմէ մին՝ իբրեւ թագաւոր Հայաստանի, անմիջաբար պետական ընկերակցութեան մէջ

142 Տես վերը յօդ. 2։

մտած էր. մինչ՝ Վրկաններու վրայ իշխող հօրեղբօրորդին՝ կայսեր հետ կապուած էր դաշնակցութեամբ մը, որ հռոմէական պաշտպանողական իշխանութեան նկարագիրն ունէր, եւ այսպէս դիւրաւ կրնար նմանապէս կախումի աղերսի վերածուիլ։ Ուրեմն Արշակունի տունը Հռոմի անուան առջեւ խոնարհած էր արդէն, երբ մեծ արքան ինքնին կայսեր հետ դաշնադրութիւն մը կնքեց, եւ ասով Տիգրան ալ մտաւ այն ճամբան, որու վրայէն հնար էր զայն Հռոմի պետութեան ենթարկումի առաջնորդել։ Հռոմ յայտնապէս կը դիտէր դաշնակցութիւնը ամենայն բարեկամութեամբ այս ուղղութեամբ զարգացնել։ Ներոնի՝ մեծ արքային ուղղած Հռոմ այցելու հրաւէրը, ուր՝ որքան մարդկային յիշողութիւնը կը զօրէր, օտար թագաւորներ կա՛մ իբրեւ հպատակ եւ կա՛մ իբրեւ գերի ընդունուած էին, առաջին քայլն էր դէպի այս նպատակը։ Վաղարշ այս առաջին յարձակումը խոհեմաբար մերժած է։ Սակայն Ներոնի ամբողջ հիւսիսարեւելեան քաղաքականութիւնը, որ Կասպից ծովու երկրները հասնիլ կը ձգտէր, անոր ալիքներու վրայէն վրկանեան դաշնակցին հետ անմիջական հաղորդակցութիւն մը հնարաւորելու համար, դեռ մինչ կ՚աշխատէր պարթեւական պետութիւնը քաղաքական եւ տնտեսական կախումի ցանցով մը

պատել[143]։ Արեւելքի մէջ յառաջացող խորացումին դէմ ծագած յեղաշրջումի բուռն շարժումը միայն, որ Ներոնի անկումին պատճառ եղաւ, այդ միջոցին Պարթեւ պետութիւնը «խաղաղական գրաւում»էն ազատած է։

Աւգոստոսի օրերէն ասդին առաջին անգամ Ներոնի կառավարութիւնն էր, որ նոր տեսակէտներով անկախ արեւելեան քաղաքականութիւն մը կը հետապնդէր։ Այս նոր ընթացքին հեղինակներն ի սկզբան նոր ադդու միջոցներով հին պաշտպանողական նպատակին ձգտած են. յետոյ խնդրոյն ներքին զարգացումէն առաջնորդուած են միշտ առաւելագոյն տարածումի հնարաւորութիւններու։ Դժբախտաբար մեր աղբիւրներու միճակը թոյլ չի տար մեզի նոր քաղաքականութեան վարիչ անձնաւորութիւններու հարցը գոհացուցիչ կերպով լուծելու. ամենապարզ տարրական ցուցմունքներէ անդին չենք կրնար անցնիլ։

Մինչեւ 62 տարին կառավարութեան ղեկավարներն էին՝ պահակագունդի պետը՝ Աֆրանիոս Բուռոս[144] եւ կայսեր ուսուցիչը՝

---

[143] Տես վարը Գլ. Բ, յօդ. 2 եւ 3։ Ներոնի հիւսիս-արեւելեան քաղաքականութիւնը յամենայն դէպս Պարթեւներու անկախութեան դէմ ուղղուած էր, սակայն չունէր Սիվերոսի (120) եւ Յիցների (37) ենթադրած երեւակայական խորհուրդները։

[144] Իր ծագումին եւ կենաց մասին հմմտ. CIL. ԺԲ. 5842։

Սենեկա։ Իրենց անվիճելի արժանիքն է ուրեմն Պարթևական մարտին քաղաքական այս նպատակը նշանակելը։ Բուռոս՝ նարբոննեան Գալլիայի Վազիոյէն՝ հռոմէացի ասպետ մըն էր. երբ Ագրիպպինայի վստահութեամբ 51ին իբրեւ պրետորեաններու միջնակպետ[145] պաշտօնի կոչուեցաւ, արդէն տանեակ տարիներով պաշտօնավարած էր արքունի եւ պետական վարչական ծառայութեան մէջ։ Հակառակ որ Տակիտոս զինքն այս առթիւ vir egregiae militaris famae կ'որակէ, կ'երեւայ թէ զինուորական արժանիքներ չունէր[146]։ Պետութեան յաջող վարչութիւնը, որ Ներոնի առաջին տարիներուն պարծանքը մնացած է միշտ, կ'երեւայ այս փորձ վարչական պաշտօնէին մեծ արդիւնքն եղած է։

Այս գործնական ուժին առընթեր, իբրեւ բաժանեկից իր իշխանութեան, կը պաշտօնավարէր նրբամիտ եւ ընտիր Սենեկան. նա առաջնորդն է իր ժամանակին սերունդին, որու շողշողուն եւ հակասութիւններով լի նկարագիրը անոր գրութիւններուն եւ ոճին մէջ իրեն վճիտ պատկերացումը գտած է[147]։ Մեծցած ազնուականութեան առաջ

---

145 Տակ. Տ. ԺԲ. 42. Սէյանոսի անկումէն յետոյ թիկնապահներու հրամանատարութիւնն երկու հոգւոյ յանձնուած էր։

146 Տես Friedrich, Berl. phil. Wochenschr., 1914, 1343։

147 Հմմտ. Norden, Kunstprosa I, 312 յջ.։

նակարդ շրջանակներու մէջ՝ ամենանուրբ դրոշմով պայմանական մըն էր. Երիտասարդութեան մէկ մասն անցուցած էր իր մէկ մօրեղբօր մօտ, որ Եգիպտոսի փոխարքայ եղած էր[148]. Իր նիւթական մեծ կարողութեան անտեսութեամբ անդրադարձն գործնական փորձառութիւններ մթերած էր. առանց վրայ կը բարդուէր իշխանատենչ ուժեղ կամք մը, որու համար գործերն եւ ախրեկը կենսայայտելքի ձեւ մըն էր[149]: Այս յատկութիւններով՝ շատ յարմար էր ինքնակալ գիրքի մը հզօր պահակապետին առընթեր, որու հետ, հաւասարակ երկարատեւ համագործակցութեան, անձնական սերտ յարաբերութիւն մը չունէր[150]: Կ'երեւայ թէ Կղաւդիոսի կառավարութեան ժամանակ ամերձուած պետական մէկ կարեւոր քարտուղարութիւնը ստանձնած եւ զայն մինչորդ գործածած է իր աքսորութեան[151]:

Այս երկուքը, որոնց բախտը վարչութեան մէջ դժուար է ճշդել որոշել, համեմական արեւելեան քաղաքականութեան նոր դարաշրջանը սկզբնաւորած են: Պիտի տեսնենք թէ քաղաքականութեան նոյն իսկ դէպի աշխարհակալութիւն շրջումը՝ գործն է երիտասարդ Ներոնի՝ այս երկու մեծ խորհրդա-

[148] Cons. ad Helv. 19, 2:
[149] Հ. Ներոն 60:
[150] Երբեք իր պաշտօնակցին մասին ջերմ արտայայտութիւն մը չունի. Հմմտ. Friederich 1344:
[151] Անդ.:

տուներուն, որոնք 58ին, երբ Վրկանեան դաշինքը կնքուեցաւ, դեռ անկասկած իրենց ազդեցութեան բարձունքին վրայ էին։

Թէ 62ին՝ իրենց քաշուելէն յետոյ՝ անոնց գործն ո՛վ յառաջ վարած է, չենք կրնար նոյն ստուգութեամբ հաստատել. եւ ստիպուած ենք գոհ ըլլալ նշանակելով այն անձերու խումբը, որոնք վերջին տարիներու մէջ կայսեր վստահութիւնը վայելած են։ Կորբուլոն տարակոյս չկայ, որ արեւելեան խնդիրներու բանակցութիւններու մէջ առաջին ձայնն ունեցած է։ Իրեն կից կարեւոր դեր վարած է իր տարիներու օգնականը Տի. Յուլիոս Ալեքսանդրը, որ հակառակ հրեայ ըլլալուն Եգիպտոսի փոխարքայ եղած է[152]։ Ոփոնիոս Տիգելլինոս պահակապետն ալ, որ կայսեր արեւելքի ուղեւորութեան ընկերակցած է[153], անշուշտ առանց ազդեցութեան չէ մնացած. վերջապէս կայսեր վստահելիներէն ծանօթ են մեզի՝ կարող քաղաքագէտ Պետրոնիոս Տուրպիլիանոս[154] եւ Կլուվիոս Ռուփոս։

---

[152] Արեւելքի այս երկու նշանաւոր կուսակալներու մասին հմմտ. Գլ. Գ, յօդ. 1 եւ 2։
[153] Տես վարը Գլ. Գ, յօդ. 2 եւ 3։
[154] Հմմտ. վերը յօդ. 2. իր մասին PIR, III, 30։

## ԳԼՈՒԽ Բ.

## ՆԵՐՈՆԻ ՀԻՒՍԻՍ-ԱՐԵՒԵԼԵԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

*Մոմզէն*[1] *առաջինն է, որ Ներոնի Եթովպիական ծրագիրները ճշդիւ անջատած է անոր դէպի Կովկասեան երկիրները մտադրած արշաւէն: Այս ձեռնարկութեան հայող շարք մը պարբերներ հասած են մեզի: Տակիտոս* (Տ. ԺԵ. 36), *կայսեր* 64*ին դէպի արեւելք ծրագրած ուղեւորութեան առթիւ, կը խօսի նաեւ եգիպտականին կից ուրիշ ծրագիրներու վրայ. Դիոն* (ԿԳ. 8, 1) 66 *տարուոյն համար կը պատմէ, թէ Ներոն անձամբ Եթովպիա եւ Կովկասեան դռներն արշաւելու դիտումէն ետ կեցած էր. Սուետոն* (Ներոն, 19) *կը յիշատակէ դէպի Կասպեան դռներն արշաւանքը, որու համար Ներոն «Աղեքսանդր Մեծի փաղանգ» անուան տակ հսկայահասակ իտալացիներէ նոր լեգէոն մը զօրակոչած է. բաց աստի* 68*ին Բրիտանիայէն ԺԴ. Գեմինա լեգէոնը իր դէպի Կովկաս չուն շարունակելով Իլլիւրիա հասած էր*[2]: *Վերջապէս Տակի–*

[1] Հռոմ. Պատմ. Ե. 394, 1:
[2] Տակ. Պատմ. Ա. 59, Բ. 66:

տոս (Գամ. Ա. 6) կայսեր Կաւկասի մէջ ունեցած դիտումներու մասին քիչ մը մանրամասնօրէն միակ տեղեկութիւնը պահած է մեզի, երբ կը խօսի Գերմանիայէ, Բրիտանիայէ եւ Իլլիւրիայէ հաւաքուած զօրքերու վրայ, զորոնք Ներոն ընտրելով՝ Աղուանից աշխարհին մէջ պատերազմի մը պատրաստութեան համար՝ Կասպեան դռներն ուղարկած է : Ուրեմն այս արշաւին նպատակն էին Կասպեան դռները եւ Աղուանից երկիրը : Տակիտոսի մեզի հասած այս բնագրին ի նպաստ կ'ելլէ այն իրողութիւնը, որ Կասպեան դռները — Դերբենդի կիրճը, լեռնաշղթային արեւելեան ստորոտին եւ Կասպեան ծովու միջեւ այդ նեղ անցքն — իրապէս Աղուանից երկրին մէջ կը գտնուէին :

Սակայն Պլինիոսի (Զ. 40) տուած խօտորող մէկ տեղեկութիւնը այս պարզ ու պայծառ մեկնութիւնը մեծապէս կը վտանգէ : Կուրի գետաբերանէն հարաւ հաստատուած Կասպեան ժողովուրդը յիշած պարագային՝ կ'ուզէ շատ տարածուած սխալ մը, որու դէմ գացած են, կ'ըսէ, նոյն իսկ Կորբուլոնի դէտերը· ատոնց քարտէսին վրայ լեռնաշղթային մէջտեղը գտնուող կիրճը, զոր Աղեքսանդր երկաթեայ դռնափեղկերով արգիլել տուած էր (Զ. 30), սխալմամբ Կասպեան դուռ անունով նշանակուած է : «Ներոն եւս, կը շարունակէ նա, իր արշաւին

նպատակակէտ կը նշանակէ Կասպեան դըռները, երբ հասնիլ կ'ուզէր ա՛յն կիրճը, որ Վրաստանի մէջէն Սարմատներու երկիրը կ'առաջնորդէ եւ որ Կասպեան ծովէն բարձրաբերձ լեռնաշղթայով մը կը բաժնուի։ Սակայն Կասպեան ցեղերու սահմանին վրայ կայ ուրիշ կիրճ մը եւս, որ Աղեքսանդր Մեծի գործերին հետապնդած ժամանակ միայն յայտնի կը ճանչցուի»։

Պլինիոս չոր ու ցամաք խօսքերով կը հաստատէ, թէ Ներոնի արշաւը ուղղուած էր ոչ թէ դէպի Դերբենդի կիրճը եւ Աղուանից երկիրը, այլ Դարիէլի կրճէն Կովկաս հիւսիս Սարմատներու երկրին՝ ուրեմն նուաճաց Ալաններուն դէմ։ Մոմզէն[3] ժամանակակից Պլինիոսի այս բառ երեւոյթին պայծառ ու վաւերագիրներու վրայ յեցած տեղեկութիւններու հաստատով՝ փորձած է Տակիտոսի բնագիրը հաշտեցնել անոր հետ, համարելով թէ վերջին հեղինակս Կովկասի այս երկու նմանանուն ցեղերն իրարու հետ շփոթած է։ Ասով դէպի Կասպեան ծով ձգտող շարժումը՝ ըմբռնուած է իբրեւ պետութեան սահմաններուն պաշտպանող սարմատական ցեղերու արշաւը կասեցնելու համար ձեռնարկուած գործողութիւն մը։ Ներոնի վերջին տարիներուն Ալաններու դէմ արշաւի մը

[3] Մոմզէն, անդ։

մեծ համանմանութիւնը պատճառ եղած է, որ Մոմզէնի այս ենթադրութիւնն ընդհանուր ընդունելութիւն գտնէ [1]:

Սակայն ես՝ որ հակառակ այս ընդհանուր ըմբռնումին հասուն խորհրդածութենէ յետոյ կը մերժեմ զայն, պարտական եմ առ այդ մանրամասն իմ պատճառաբանութիւնները տալ: Նախ Տակիտոսի տեղեկութիւնները աշխարհագրօրէն այնքան բացորոշ են, որ զանոնք առանց վարանումի չենք կրնար ի նպաստ Պլինիոսի տեղեկութիւններուն անտեսել. քաղաքական եւ անտեսական ծանր պատճառներ Տակիտոսի պատմուածքին թեր կ՚ելլեն: Վերջապէս պիտի տեսնենք թէ Պլինիոս Կասպից ծովու եզերքաստաններու տեղագրութեան մէջ մասնաւորապէս գէշ աշխատած է: Ըստ այսմ իմ ըմբռնումս երկու ինքնակաց աւանդութիւն ունինք, որոնցմէ Տակիտեանը նախապատուութեան արժանի է:

### 1. Կասպեան արշաւին նպատակը:

Նախ պէտք է ճշդենք Կասպից դռներու Ալուանից երկրին հանդէպ ունեցած դիրքը եւ առ այս նախ պէտք է ստուգենք Կասպեան ժողովուրդներու բնակավայրերը: Կասպեան երկիրները հին դարերու մէջ երեք պետութիւններու հետ աղերսի մէջ կը գտնուին.

[1] Տես Հէնտըրսըն, Ներոն 226 յջ., Chapot, Frontière 36. Täubler, Klio Բ. 14 յջդ.

230ական թուականին Ատրպատականի Արտաւազ թագաւորն այդ երկիրները մինչեւ Կասպից ծովու եզերքը հպատակեցուցած է[5]։ Իր նուաճած երկիրներու մէջ էր նաեւ Կասպեան նահանգը, որ Անտիոքոս Մեծի մահուընէն ետքը Արտաշէսի հայ պետութեան անցաւ (Ստրբ. ԺԱ. 528)։ Այս նահանգը կը պարփակէր իր մէջը տորին Երասխի հարթաւայրը եւ արդէն Պլինիոս (Զ. 40) այ Կասպեան ժողովրդեան բնակավայր կը նշանակէ Կուրի հարաւային եզերաշխարհը։ Կասպեան աշխարհին կը պատկանէր սակայն նաեւ միջին Երասխի լեռնադաւառը, որ Կասպիք երկրանունը մինչեւ միջին դարու սկիզբները պահուած էր[6]։ Ուրեմն Կուրէ հարաւ՝ ճշդօրէն շրջապատուած Կասպեան աշխարհ մը ունինք մեր առջեւը, որ Կասպեան ժողովուրդներու նախկին բնակավայրն ըլլալու համար մեծ կարեւորութիւն կը ներկայացնէ։

Սակայն կը սխալի Հերման[7] համարելով, թէ այս անձուկ աշխարհը Կասպեան ժողովուրդներու բովանդակ բնակավայրը կը կազմէր. նկատի չէ առած նա, թէ շատ ծանրարժէք վկայութիւններ կան անոնց բնակավայրերուն մինչեւ Կովկասեան լեռնաշղթան տարածուելուն։ Ծովը դժուարաւ կրնար տա-

---

[5] Pol. Ե. 55. 2. 8։
[6] Փաւստ. Դ, Ժ, էջ 159։
[7] PWRE. X, 2274. Kaspioi հատուածը։

ցած ըլլալ իր անունը ժողովուրդէ մը, որ անոր երկրին քանի մը հազարամեակ լայն երիզ մը կը շօշափէր. նոյնպէս ալ Կաւկասը Կասպեան լեռնաշղթայ անունը պիտի չկրէր, եթէ Կասպեան ժողովուրդը քանի մը հարիւր հազարամեակ տարածութեամբ դաշտավայրենով մը անջատուած ըլլար անոր տարածէն (Հերման, 2272)։ Այս կռահումները կը հաստատուին Թէոփանէս Միտիլինացւոյն աւանդութեամբ, որու համաձայն Կասպեան աշխարհը Գոմպէոսի ժամանակ Աղուաններու մէկ կարեւոր մասն էր (Սարր. ԺԱ. 501)։ Եւ որովհետեւ նոյն ժամանակներն Աղուաններու հարաւային սահմանը կը գծէր Կուրը (Սարր. ԺԱ. 501), անմիջապէս կը հետեւի, թէ Կասպեան աշխարհը կը տարածուէր մինչեւ գետին հիւսիսային եզերքը։ Ուրեմն Կիալինդ յիովին իրաւունք ունի, երբ Կուրի ամբողջ դաշտը՝ Կաղուռեան լեռներէն մինչեւ Կասկաւ, եւ ծովէն մինչեւ Վրական սահմանը՝ Կասպեան հնագոյն երկիր կը յայտարարէ [8]։ Աղուանները յայտնապէս կը տիրէին երկրին հիւսիսային մասին, իսկ հարաւն աւելի ուշ Մարաց եւ Հայոց աւար դարձած է։

Սակայն եթէ Աղուանները երկրին հիւսիսային մասին տիրապետած են, շատ հաւանական է ուրեմն, որ անոնք եկած ըլլան Կաւկասէն կամ հիւսիսային դաշտավայրերէ։

---

[8] PWRE. IX, 484։

Հակառակ Ստրաբոնի (ԺԱ. 501), որ անոնց հիւսիսային սահմանը կը նշանակէ Կաւկասը, Պլինիոս (Զ. 31) եւ Պտղոմէոս (Ե. 12) դիտեն, թէ արեւելեան Կաւկասը եւ Դերբենդի ծովեզրն Աղուանից մաս կը կազմէին. ճիշդ այս կողմերն է, որ Պլինիոս Ալբանոս գետը, իսկ Պտղոմէոս երկրին գլխաւոր քաղաքը՝ Ալբանա, կը դնեն: Այս տեղեկութիւններու հիման վրայ արդէն Հ. Կիպերտ[9] ուղիղ հետեւցուցած է, թէ Աղուաններն այս երկիրներէն եկած են:

Աղուաններու գաղթի ժամանակն ալ կրնանք մասամբ ճշդել: Երբ Պատրոկլէս՝ Սելեւկեան ծովակալը 285 եւ 282ի միջոցին Կասպեան ծովեզրը կը հետախուզէր[10], արեւմտեան եզրին վրայ միայն երկու ժողովուրդ կը գտնէր՝ Աղուանները եւ Կադուսացիները (Ստրբ. ԺԱ. 507): Ուրիշ տեղ մը սակայն կը յիշէ դեռ Կասպիացիները (Ստրբ. ԺԱ. 514), որոնք յամենայն դէպս ծովեզրին վրայ այլ եւս յատուկ երկրամասի մը վրայ չէին բնակէր: Այս պատճառով Կիւլինդ (Անդ) Կաւկասի ձորերուն մէջ կ'ուզէ տեղաւորել զանոնք, իսկ Հերման (2274) միջին Երասխի լեռներուն մէջ: Իմ կարծիքովս երկուքն ալ անիրաւ են. այդ միջոցին Կասպեան ժողովուրդը յատուկ պետութիւն մը չէր կազմէր

[9] Lehrbuch d. a. Geogr., 85:
[10] Տես Neumann, Hermes ԺԹ. 165 յհդ.:

այլ եւս եւ առջէն այն ժամանակ Աղուաններ-րու՝ ղուցէ եւ Կապուտացիներու իշխանութեան տակ կ՚ապրէին. բայց իրենց անունը դեռ տարիներով մնացած է այն երկրին վրայ, ուր Ցեղերն առաջին անգամ ծանօթացած էին անոնց:

Ուրեմն Աղուաններու Կաւկասէ Հարաւ Հարթավայրին մէջ տարածուելուն terminus ante quem դրէտք է համարինք 285 տարին, իսկ terminus post quemը կու տայ մեզի Պլինիոս իր վերոյիշեալ տեղիքովը (Զ. 40): Պլինիոս՝ անոնց անյիշատակ թողած՝ Աղեքսանդրի պատմագրի մը կը պարտի այն տեղեկութիւնը, թէ բուն Կասպեան ցեղերը նոյն չէին Վրացական Դարիէլի կիրճին հետ, այլ թէ աւելի դէպի արեւելք Կասպիացիներու սահմանին վրայ կը գտնուէին: Ուրեմն կը հետեւի, որ Աղեքսանդրի օրերուն Կասպիացիք իրենց բնակավայրը ունէին դեռ մինչեւ Կաւկաս: Զորրորդ դարու դարավերջին՝ այսինքն 323ի եւ 285ի միջեւ, Աղուանները իրենց պատմական բնակատեղին հասած են:

Կասպիացիներու եւ Աղուաններու փոխախակի տեղերուն այսպէս լուսաւորելէ ետքը, կրնանք Կասպեան եւ Աղուաններու ցեղերու երկակողմանի դիրքն որոշել: Կ՚ուզեն առնք նոյնացունին ծովեզերեայ Դերբենդի կիրճին կամ Սալաւատի այն անցքին հետ, որ Կուրի կողմնակի մէկ ձորէն Դերբենդի հարթավայր

կ'առաջնորդէ, ամէն պարագայի մէջ այն անցքը, որ իրաւամբ Կասպիացիներու անունը կը կրէ, Աղուաններու երկրին մէջ կը գըտնուի. մանաւանդ թէ անոր ռազմական միջակէտը կը կազմէ, վասն զի անոր եւ միա՛յն անոր միջոցով բարձրաբերձ լեռներու վրայէն՝ երկրին երկու մասերուն հաղորդակցութիւնը կը հաստատուի։ Ուստի եւ ռազմական—աշխարհագրական շատ մեծ իմաստ մը կայ, երբ Տակիտոս Կասպեան դռները եւ Աղուաններու դէմ ուղղուած արշաւի մը մասին կը խօսի։

Ասկէ զատ քաղաքական եւ տնտեսական կարեւոր պատճառներ տակիտեան տեղեկութեան ի նպաստ կ'ելլեն։ Հենդերսըն[11] շատ ուղիղ կը մատնանշէ, թէ Ալաններու դէմ արշաւ մը շատ լաւ կրնայ զետեղուիլ Ներոնի հետեւած Սեւ Ծովու քաղաքականութեան շրջանակին մէջ. իսկ Տէօփլէր[12] կ'ուզէ՝ Կովկասի անցքերու ազխումին մէջ՝ տեսնել Դոնուբեան սահմանագլխոյն փակումին կարեւոր ամբողջացումը։ Սակայն կիրճերու փակումն այն ատեն միայն հնարաւոր էր, երբ Աղուանները լերան երկակողմն իրենց կայաններու մէջ անխախտ հպատակութեան տակ պահուէին։ Անոնք թէեւ Պոմպէոսի եւ Անտոնիոսի ժամանակները Հռոմի գերիշխանու—

[11] Ներոն, 226 էջ.։
[12] Klio թ., 14 էջ.։

թիւնը ճանչցած էին [13] եւ Վրացի Միհրդատի Հայաստանի դէմ ըրած ձեռնարկութիւններուն մէրով իրենց բանակովը մասնակցած [14], սակայն 50ական տարուայն սկիզբը, երբ Հռոմէական իշխանութիւնը խորտակուեցաւ Հայաստանի մէջ, Վրացիներու հետ Աղուաններն ալ ազատութեան հետ իրենց կայրը կորանցուցին, սակայն անոնց հետ հնազանդութեան չվերադարձան: Երբ Կորբուլոն 57ի ամառը՝ հիւսիս-արեւելեան բոլոր հպատակ ազգութիւնները Հայաստանի դէմ կենդրոնացած յարձակումի մը կոչեց, Աղուանները այս կոչին չհնազանդեցան [15]: Իսկ 58ի ամառը՝ Տրրդատի փախուստէն յետոյ, Հռոմէացի զօրավարին աչքին առջեւ ունի այն հնարաւորութիւնը՝ թէ Տրդատ կրնար Աղուաններու մօտ ապաստանարան գտած ըլլալ [15]: Վստահելով ափական դուռ Հռոմէական երկիրներէն իրենց հեռաւորութեան վրայ եւ յուսալով ցեղակից հիւսիսային ազգերու օգնութեան վրայ՝ Աղուանները ջանացած են իրենց անկախութիւնը պահել անւականայէս: Ուստի արեւելքի մէջ Հռոմի պատուոյն եւ ազդեցութեան համար անհրաժեշտ էր անոնց հպատակեցումը: Եթէ Մամէնի եւ Տէօրլերի կարծիքով հռոմէական պետութիւնն Աղուաննե-

---

[13] Պլուտ. Պոմպ. 34 յէ., Աքա. 34, Դիոն. ԼԶ. 54 եւ ԼԷ. 4:
[14] Տակտ. Տար. Զ. 32 յէ. եւ ԺԱ. 9:
[15] Տես վերը Դլ. Ա. յօդ. 1:

րու առջեւ արդիւնաւորապէս փակել կ'ուզէր Կովկասի միայն անոնց անցքը, իմ համոզումովս պէտք էր նախ Աղուաններու երկիրը գրաւել :

Դարձեալ՝ Փոնտոսի եւ Կասպեան ծովու միջեւ գտնուած երկիրը մասնաւոր նշանակութիւն մը կը ստանայ Ներոնի հայկական քաղաքականութեան շրջանակին մէջ : Եթէ Հայաստան Արշակունեայ մը իշխանութեան կը թողուէր, պէտք էր փոյթ տանիլ բոլոր դրացի երկիրները, որոնք պարթեւ գերիշխանութեան օղակին մէջ չէին, Հռոմի ձեռքին տակ ամփոփել : Մասնաւորաբար Աղուաններու նման մարտական քաջութեամբ եւ հինէն ի վեր ապստամբական սովորութիւններով ցեղ մը՝ իր անկախութիւնը պահելու չէր Հայաստանի հեռաւորագոյն սահմաններուն վրայ :

Հռոմէական ազդեցութիւնը Հայաստանի վրայ այն ատեն միայն բաւականաչափ ապահովուած պիտի ըլլար, եթէ հպատակ պետութիւններու օղակը սկսելով միջին Եփրատէն՝ Սամոսատի քովէն մինչեւ Կուրի ծովախառնուրդը երկարէր ու փակուէր : Նոյն իսկ պարթեւական նորահաստատ բարեկամութեան անտեսելով՝ Հռոմի զինուորական դիրքին ամէն հնարաւոր ուժեղ ընդարձակում միայն նպաստաւոր էր :

Պարթեւական բարեկամութեան կից՝ Ներոնի արեւելեան քաղաքականութիւնն իր

կապարճին մէջ ունէր՝ դեռ երկրորդ սլաք մը՝ Վրկանեան դաշնակցութիւնը։ Կասպեան ծովու հարաւ–արեւելեան եզրին վրայ հաստատուած այս նոր իշխանութիւնը, որու դաշնակցութիւնը պարթեւական մարտին մէջ այնքան հաճելի եղաւ[16], հռոմէական կառավարութեան աշխարհի հաշիւներուն մէջ կարեւոր ազդակ մը կը կազմէր, ու անոր արշակունի իշխանը մեծարժէք անձնաւորութիւն մըն էր պարթեւական գալիք բարդութիւններու մէջ։ Բայց Վրկանի հետ այս բաղձալի առեւական կապը հաստատել կարելի էր միայն Կասպեան ծովու եզերքէն, ուստի Վրկանեան դաշնակցութեան ցանկալի խորացումը՝ Կուրի աղուանեան հարթավայրին դրաւումին կը մղէր։

Ուրեմն չորս քաղաքական զանազան շարժառիթներ ի նպաստ կ'ելլէն Տակիտոսի հաղորդած Կասպեան արշաւին։ Արեւելքի մէջ հռոմէական պատիւը այն ատեն կը փրկուէր, երբ պատմական արշաւ մը կատարուէր յամառ Աղուաններու ապստամբութեան դէմ. իսկ Կովկասեան անցքերու Սարմատներու դէմ փակումն արդիւնաւոր կրնար ըլլալ միայն, եթէ այս կէս վաչկատուն ժողովուրդն արեւելեան Կովկասի երկու կողմն ալ անխախտ հպատակութեան մէջ պահուէր։ Հայաստանի զինուորական շրջափակումը, —

---

16 Տես վերը Գլ. Ա. յօդ. 4։

անոր քաղաքական ազատ դիրքին անհրա-ժեշտ հակապահանջը, — Աղուաններու ներ-փակումով միայն կ'ամբողջանար. եւ ի վեր-ջոյ Վրկանեան դաշնակցութիւնն այն ժա-մանակ միայն անուանական արժէքով քաղաքա-կան օժանդակ ազդակ մը կը դառնար, երբ յաջողէր Հռոմ՝ աղուան ծովեզրին գրա-ւումովը՝ տեսակ մը դրացիական աղերս ստեղծել նոր դաշնակցին հետ:

Քաղաքական ծանրակշիռ այս պատճառ-ներուն վրայ դեռ կը բարդուէին անտեսա-կան շարժառիթներ, որոնք, ինչպէս ծանօթ է, ներոնեան վարչական խորհուրդներուն մէջ ընդարձակ տեղ կը բռնէին: Սելեւկոս Նիկատորի եւ անոր որդւոյն ու գահակցին Անտիոքոսի հրամանաւ՝ Պատրոկլէս երրորդ դարու 80ական թուականներուն Կասպեան ծովեզրները խուզարկած էր[17] եւ իմացած էր, թէ նաւարկութեան ջրուղի մը կար, որ Բակտրիայէն Ոքսոսի վրայէն Կասպից ծով կը հանէր, եւ այս ճամբով հնդկական եւ չինական ներածումին մէկ մասն արեւ-մուտք կը հասնէր[18]: Պոմպէոսի հետախոյզ-ներն՝ անոր Աղուաններու երկիրը գտնուած միջոցին՝ այս տեղեկութեան ճշդութիւնը ստուգած էին (Վարրոն. առ Պլին. Զ. 52): Արդէն հոս ուղի մը կար, որ Բակտրիայի

17 Տես այս Պլինիոս Յրդ յօդուածը:

18 Ստրբ. ԺԱ. 509 ըստ Էրատոսթենէսի եւ Արիստոբուղի:

*մէջ գտնուող՝ ներքին–ասիական միջեր–կրեան վաճառականութեան կեդրոնը կը տանէր, եւ որ պարթեւական հակակշռէն զերծ էր եւ հռոմէական վաճառականն անկախ կ՚ընէր պարթեւ միջնորդութենէն։ Այս ճամբուն արիւնայուն ջանքը կատարելապէս կը համապատասխանէ ներանեան Արաբիայի եւ Եթովպիայի հարաւ–արեւելեան քաղաքականութեան։ Բայց ինչպէս որ հոն՝ հարաւային Արաբիայի եւ Մերոյէի պետութեան մէջ՝ գինուորական կայեանի մը հաստատումն անհրաժեշտ էր, նոյնպէս ալ հոս անցման երկիրը՝ Աղուաններու երկիրը, պէտք էր Հռոմի պատկանիլ։ Այսպէս ուրեմն զանազան պատճառներ՝ Տակիտոսէ աւանդուած արշաւը դէպի Աղուաններու երկիրը յանձնարարելի կ՚ընեն։*

*Այսր հակառակ Պլինիոսի ալանեան արշաւին ընդհանուր պատճառներն էապէս տարկար են։ Թէ Ներոն ձեռնարկած է մեծ պատերազմութեամբ արմատական ալէկոծեալ յորձանքը թմբրեցնել ընել, անժխտելի է. բայց ինչպէս տեսանք այս նպատակին աւելի կը ծառայէր Աղուաններու երկրին գրաւումը քան թէ Ալաններու դէմ արշաւ մը, որ մինչ առանց տեւական արդիւնքի գինուորական ցոյց մը պիտի ըլլար։ Տասիդ*[19] *եւ Տէօբլեր*[20]

---

[19] Տասիդ, էջ 37 յլ. եւ 367 յլ.։
[20] Klio Թ, 18։

կ'ապրէին, թէ հռոմէական շահերը Դարիէլի՝ վրական կիրճին գրաւումովը լիապէս ապահովուած էին, մինչ Դերբենդի՝ Ալաններու կիրճը ճամբայ կը բանար միայն դէպի Պարթեւներու պետութիւնը եւ դէպի անոր հայ եւ ատրպատականեան արքանեակները։ Կարծեմ աւր հակառակ կրցայ ապացուցանել, թէ Ներոնի վարչական խորհուրդները հռոմէական շահերու նախկին շրջանակէն շատ անդին կը ձգուէին եւ կը ճգնէին հետզհետէ պարթեւական պետութիւնն ալ առեղի իրենց սահմաններու մէջ փակելու[21]։ Ուրեմն Տակիտոսի աւանդութիւնն այս կողմանէ ալ ստուգութիւն չի վերցներ։

Տակիտոսի տեղեկութեան դէմ է ուրեմն միայն Պլինիոսի ճշտութիւնը, որ եթէ իբրեւ ժամանակակից քաղաքագէտի մը ճշտութիւնն արհամարելի չէ, սակայն բանասիրօրէն ալ պէտք չէ որ գերագնահատուի։ Վասն զի ճիշդ կասպեան եւ անդրկովկեան երկիրներու աշխարհագրութեան մէջ մասնաւորապէս վատ է իր աշխատանքը։ Հոս համառօտագիրներու այնպիսի առատութիւն մը ունի իր տրամադրութեան տակ, որ չէ կրցած տիրանալ անոնց եւ տեղ տեղ անհնարին խառնակութիւն մը առեղծած է[22]։ Այսպէս Կասպեան ժողովուրդը, զոր քիչ առաջ Կուրէ

---

[21] Տես Դլ. Ա, յօդ. 4։

[22] Զ. 46 յլ. տես նաեւ այս Կիսլինգ ի PWRE. VIII. 434. յօդ. Herakleia 22։

հարու. կը գտնուի, քանի մը տող ետքը բոլորովին անփութօրէն՝ կասպեան դուռներէն հիւսիս մինչեւ ծով, Վրկանեան արեւմտեան սահմանին վրայ կը տեղաւորէ [23]։ Եթէ իր տեղեկութիւններու աղբիւրը քննել կ'ուզենք, առնուած են արեւելեան կովկասեան երկիրներու. համար իր առջեւն ունեցած աղբիւրներու հարցը յարուցանել։

Ինքը հինգ հեղինակ կ'անուանէ, որոնցմէ կախում կրնայ ունենալ խնդրական մասերուն մէջ։ Կուռնելիոս Նեպոսը կը յիշէ կովկասեան կիրճերու լայնութեան մասին տեղեկութեան մը առթիւ (Զ. 31)։ Վարրոնի կը պարտի Կասպեան ծովու իր առողջարարութիւնը եւ անոր ջրոյն անուշութեան ծանօթութիւնը (Զ. 38, 51)։ Ագրիպպայի քարտէսին վրայ կարդացած է Կովկասի արեւելեան վերջաւորութեան ափ եզերքը (Զ. 39)։ Կովկասեան անցքերու ընդարձակութեան եւ Սելեւկոս Նիկատորի ջրուղի մը շինելու ծրագրի մասին իրրեւ աղբիւր կը յիշէ Կղաւդիոս Կայսեր Անտիայի վրայ գրած գործը (Զ. 31)։ վերջապէս գործածած է Կորբուղոնի դէպքերու քարտէսը (Զ. 40)։

Այս աղբիւրներէն Նեպոս եւ Վարրոն հիմնուած են Պոմպէոսի հետախուզութիւններու վրայ, որոնք իր անձնական գրագրին՝ Թէոփանէս Միտիլինացւոյն ձեռքով հանրու-

[23] Զ. 45, տես ու այս Herrmann, 2273։

թեան մատչելի եղան։ Ագրիպպաս կրնար դեռ գործածել Վենտիդիոսի տեղեկութիւնները, որ իբրեւ Անտոնիոսի պատուիրակը մինչեւ Կասպից ծովու եզերքն յառաջացած էր[24]։ Կլաւդիոս կ'երեւայ, թէ միայն գրական աւանդութիւն մը օգտագործած է, ինչպէս կը տեսնուի Պատրոկլէսէ փոխ առնուած Իսթմոսի լայնութեան մասին զարմանալի տեղեկութենէն։ Պլինիոսի այս երկիրներու վրայ տուած նոր տեղեկութիւններու համար կը մնայ ուրեմն միայն Կորբուլոնի դէտերուն քարտէսը եւ տեղեկագիրը։

Թէոփանէսի ատաղձէն դուրս, որ ամէնէն լաւ պահուած է Ստրաբոնի քով, Պլինիոս երկու նոր նշանակելի աւելոյթներ ունի։ Նա իբրեւ առաջինը գիտէ թէ Աղուանները նաեւ լեռնաշղթային հիւսիսակողմեան նեղ եզերագաւառը կը բնակէին (Զ. 39), եւ դարձեալ նա գիտէ իբրեւ միակը, թէ կայ դեռ արեւելեան Կովկասի ուրիշ անցք մը, որ իրաւամբ Կասպից դուռ անունը կը կրէ (Զ. 40)։ Այս սերտիւ կապուած երկու տեղեկութիւնները իրերու մէջ ծանօթութեան համաձայն միայն Կորբուլոնի դէտերէն կրնան բխիլ, որոնք այս աղերսով ալ կը յիշուին իրմէ (Զ. 40)։ Այսպէս նոյն իսկ Պլինիոսի ներկայացումէն կը հետեւի, թէ ասոնք ոչ լեռնաշղթային մէջտեղն եղող կիրճէն, այլ

[24] Պլուտ. Անտ. 34, Դիոն. ԽԹ. 4։

*արեւելք դառնալով Դէրբէնդի կիրճէն օգ-տուած են ։*

*Ի՞նչպէս ուրեմն Գլինխա իր խօսարդ կարծիքին յանգած է. կ'երեւայ Թէ ինքն իսկ դահ եղած է այն սխալին որուն դէմ եռան-դով կը կռուի ։ Իմ կարծիքովս իր Կասպեան համաստադիրներու համրածանօԹ անկար-դուԹեան համբերԹայ՝ իր հակառակորդներուն ան-ստուԹիւնները պատճառ եղած են այս դժպհի խաղին ։ Հասարակութիւնը դէպի Կասպեան դռները յայտարարուած արշաւին առարկան դարձուցած է Վրական կիրճը եւ այդ ար-շաւը կապած է ատրմատական կոխներու-հետ [25] ։ Գլինխա Կորրուդոնի դէպերու եւ ա-նոնց քարտէսին կը պարտի այս սխալին ուղ-ղումը [26] ։ Սակայն իր ծանօԹագրուԹիւննե-րու խառնակութին մէջ այս կարգը կորսնցու-ցած է եւ հոմէական հասարակութեան սխալ ըմբռնումը՝ տակէլի կայսեր պատուի-րակներուն վերադարձով՝ անոր ուղղումը գործածած է այն իսկ անձերուն դէմ, որոնց կը պարտի այդ ճշդումը ։ Ասով իրեն քաղ-ձալի առիԹ մը կը ներկայանար անգամ մը եւս մեծախօս, բայց անգործ Ներոնին վրայ*

[25] Տես յետոյ Գլ. Գ. յօդ. Զ ։

[26] Նոր Աղեքսանդր. Ներոնի հետախոյզներուն է յանձնայն դէպս Աղեքսանդրի պատմիչին համապա-տասխան ակզիբը ։

նշանակելի ցնցում մը նետելու։ Ասոր համառօտ Տակիտոս հոս ալ արքունի աղբիւրներէ առնելով, կայսեր ճշմարիտ դիտումները պահած է ապագայ սերունդներուն[27]։

Հիմայ հարց կը բարձրանայ, թէ ինչո՞ւ Աղուաններու երկիրը եւ Վրկանը հռոմէական պետութեան համար իրենց այս կարեւոր նշանակութիւնը ստացած են։ Այս հարցին լուծումին նուիրուած է ներկայ գլուխս։ Ու այս նախ պէտք ենք զննել արեւելեան Իրանի քաղաքական դիրքն ա՛յնպէս, ինչպէս կերպարանուեցաւ ան մեր թուականին դարադարձին՝ առաջին պարթեւական պետութեան քայքայումէն ետքը։ Այն ժամանակի քաղաքական փայրափոխումները հնարաւորութիւն պիտի տան մեզի դատաստան մը կազմելու դաշնակցութեան կրնքումի վայրկենին վրկանեան տէրութեան ունեցած ընդարձակութեան եւ նշանակութեան վրայ։ Յետոյ պիտի քննենք Վրկանի եւ Աղուանից երկրին երթեւեկային աշխարհագրական դիրքը, մանաւանդ պիտի տեսնենք կարեւորութիւնը նաւագնացութեան այն ճամբուն, որ Բակտրիայէն հռոմէական կողքին արեւելեան սահմանը կը հանէր։ Ասոնցմէ պիտի հետեւին ներքնեան հետեւ-

---

[27] Տակիտոսի այս աղբիւրին մասին տես Klio ԺԹ։

արեւելեան քաղաքականութեան երեք կարեւոր հանգրուանները. ուժեղացում պոնտական մեկնակէտի դիրքին, Աղուաններու հպատակեցումը եւ անդր-կովկասեան ծովային երթեւեկի ձեռնարկը։

## 2. Արեւելեան Իրանի քաղաքական յարաբերութիւնները առաջին դարուն։

*Արեւելեան Իրանի քաղաքական յարաբերութիւններու վրայ մեր ծանօթութիւններու աղբիւրը կը կազմեն գրականութեան մէջ ցրուած քանի մը տեղեկութիւններ եւ անոր իշխաններու դրամներէն անոնք, որոնք կրնան այս շրջանին մէջ դետեղուիլ։ Մեր քննութեան մեկնակէտը պիտի ըլլայ երկրին այն կարգը, զոր Իսիդոր Խարաքացի՝ հնագոյն արշակունեան հարստութեան կործանման յաջորդող անմիջական շրջանէն պահած է մեզի*[28]։

*Իսիդոր Աւգոստոս կայսեր կողմանէ հեռաւոր արեւելք ղրկուեցաւ, որպէս զի աշխարհագրական հետախուզութիւններով Կ. Կեսարի, որ Ք. յառաջ 1ին արեւելք մեկնած էր, ռազմական գործողութիւնները նախապատրաստէ*[29]։ *Այդ միջոցին Մարգիանա*

---

[28] GGM. I, 244 *յջ.*։

[29] *Գլին. Դ.* 141. *Կ. Միւլլէր հետեւելով Բեռնհարդիի հոս իրաւամբ Դիոնիսիոս անուան տեղ Իսիդոր նշանակած է (էջ ՂԱ յջ.)*։

վերականգնումին։ Մանանէսի անէն վերջին երկու արշաւանքները՝ Հրահատ Դ. եւ անոր կրտսերագոյն որդին Հրահատակէս՝ նոյն իսկ արեւելքի համբերող ժողովուրդներու համար անտանելի էին։ Անոնց բռնակալական կամայականութիւններու դէմ ծագած դժգոհութիւնը՝ պետութիւնը ծանր կռիւներու մէջ խորտակեց, որոնք 5էն մինչեւ 15 տարիներու միջոցին Իրանի պատմութիւնն անթափանցելի մշուշով մը կը պատեն։ Հազիւ այս մթութիւնը կը փարատի, պետութեան գեկը կը տեսնենք նոր արքայից արքայի մը՝ Արտաւանի ձեռքը, որ Հրահատ Դ.ի Հռոմէացիներէ դաս բարձրացած որդին կը վտարէ։ Հռոմի դահամատանը՝ Գերմանիկոս 18 տարւոյն արեւելքի նոր տիրոջ հետ համաձայնութիւն մը կը կնքէ, որով Հռոմի եւ Տիգրանի յաջորդութիւններն տասնեակ մը տարիներու համար խաղաղ ընթացք մը կը ստանան (Տակ. Տ. Բ. 1 յջ.)։

Արտաւան միայն մէկ կողմանէ արշակունի էր, իսկ հօր կողմանէ ոչ համածին եւ մեծցած էր Դաեկերու մօտ (Տակ. Տ. Զ, 41, 42, Բ. 3)։ Վրկանի եւ Կրմանի ազնուականներու մէջ ունէր իր խմբակը, որ անյեղլի հաւատարմութեամբ իրեն կուսակից էր (Տակ. Տ. Զ, 36)։ Տակիտոսի վկայութեամբ (Բ, 3) իր դակեան յաջորդութիւններու շնորհիւ 15էն դաս բարձրացաւ, իսկ 36էն իր Վրկան-կրմանեան հաւատարիմները՝ դահի

կորուստէն յետոյ իր փախուստի ճանապարհը հարթեցին (Տակ. Տ. Զ, 44)։ Իր որդիները Վարդան եւ Գոտարզ այ իրենց ուժերով հիւսիս-արեւելեան նահանգներու մէջ արմատացած էին։ Գոտարզ անոնց օգնութեամբ Վարդանի նորածագ ապստամբութեան դէմ յաջողութեամբ կը մարտնչի եւ երբ վերջապէս կը տիրապետէ արքայից արքայի թագը թողուլ իր եղբօր, կը պահէ իրեն Վրկանի իշխանութիւնը (Տակ. Տ. ԺԱ, 8, 9)[31]։ Իսկ Վարդան համանման դէպքի մը պարագային կ'ապաստանի հեռաւոր արեւելք՝ տոխարեան Բակտրիայի սահմաններու մօտ (անդ, ԺԱ, 8)։ Ըստ այսմ Արտաւանի կառավարութեան սկիզբէն մինչեւ Գոտարզի մահը՝ կէս դարու միջոցին, արքունի ուժին ծանրակէտը Վրկանեան երկիրներու եւ անոնց սկիւթական անդրաշխարհին մէջ հաստատուած էր։ Այս յարաբերութիւններէն՝ Արտաւանի համար կարելի է այն եզրակացութեան գալ թէ ան զաւակն էր արշակունի մօր մը եւ սկիւթական իշխանի մը, որ հին պետութեան քայքայումէն՝ նախ Վրկաններու երկրին եւ ապա արեւմուտքին այ տիրացած է։

Այս ըմբռնման դէմ Յ. Մարկուարտ

[31] Գոտարզ, ինչպէս իր դրամները, որոնց ընթերցուածը ի սկզբան սխալ կարդացուած էր, կ'ապացուցանեն, Արտաւանի հարազատ որդին էր. տես Steinի PWRE, VII, 1676, յօդ. Gotarzes ըստ Wrothի, Num. Chron., 1900, 93 յլ., Catalogue XLV, 2։

(ZDMG, ԾԸ, 640 յջ.) հետեւեալ նոր կարծիքը կը դնէ. Արտաւան Ատրպատականի մարական արքունի անէն կը ելնէ եւ յանձին Արտաւանի այս ցեղը պարթեւական գահին տիրացած է: Իր յենակէտն է Քէյ-Խոսրովի իրանեան դիւցազնավէպը, որու համաձայն սա Ատրպատականի արքային որդին էր եւ դեռ մանուկ հասակին անդրկասպեան անապատի թուրքմէններու քով կը փախչի, իսկ իր նախահայրերու գահին վրայ հաստատուիլը կը պարտի Խորասանի Գուդարզ թագաւորին (անդ, 642): Դարձեալ Մարքարտ (ԺԱ. 523) կը պատմէ, թէ Ատրպատականի արքունի ցեղը, Մոկքի, Հայաստանի եւ Պարթեւներու թագաւորներու հետ ազգակցական կապեր հաստատելէ ետքը դեռ կը տեւէր: Եւ վերջապէս Յովսեփոս (Հն. ԺԸ, 48 յջ.) կ'աւանդէ, թէ Արտաւան Մարաստանի թագաւոր էր, երբ մեծ արքային գահը հրաւիրուեցաւ:

Սակայն առաջ բերուած փաստերը այդ կառուցուածքին չեն տոկար: Իրանեան դիւցազնավէպը շատ մը ուրիշ գծերու կից Վաղարշի կեանքէն գծեր ալ Քէյ-Խոսրովի պատկերին մէջ ներմուծած է (Մարկուարտ, Անդ, 642) եւ որովհետեւ Վաղարշ Ատրպատականի թագաւորին որդին էր, շատ հաւանական է, որ աւանդավէպի դիւցազնին երիտասարդութեան պատմութիւնն՝ առաջին դարու երկու քաջ մեծ-արքաներուն կեանքի դէպքերուն

խառնուրդ մը կազմէ ։ Իսկ Սարաբոն կը հաստատէ միայն թէ արքունի ցեղը դեռ կը տեւէ, բայց ոչ թէ դեռ կ'իշխէ ։ Այս ցեղին վերջին ժառանգ անդամն է Արիոբարզան, զոր Կ. Կեսար Հայաստանի թագաւոր կարգած է քրիստոնէական թուականէն առաջ մը յառաջ[32] ։ Արիոբարզանի վաղահաս մահէն ետքը հայերն անոր որդիներն արտաքսած են (Տակ. Տ. Բ, 4. Դի, 10 ա, 7), որոնք հաւանաբար Սաբարոնի գրութեան ժամանակ Հռոմ արքունքի մէջ կ'ապրէին ։ Այսպէս այս եղելքն ալ առանց Արտաւանի իր մեկնութիւնը կը գտնէ ։

Ի վերջոյ այս խնդրոյն համար Յովսեփոս լիարժէք վկայ մը չէ ։ Նոյն առթիւ եւ աղերսով կը հաստատէ, թէ Արտաւան իր Որոդէս որդին՝ Վոնոնի արտաքսումէն ետքը, 16ին Հայաստանի թագաւոր կարգած է (ԺԸ, 52) եւ Տէօրլէր կարծած է այս վկայութեան գրամագիտական փաստ մը գտած ըլլալ[33] ։ Սակայն Որոդէս՝ իր երիցագոյն եղբօր Արշակի մահէն յետոյ միայն՝ 35ին Հայաստան անցած է[34]. եւ բոլորովին ան-

[32] Mon. Anc., Ե, 28։ Տակ. Տար. Բ, 4։ Դիոն. Դի, 10 ա, 7։

[33] Parthernachrichten, 12 յն. ։ Խնդիրն երկու-պարթեւական դրամներու վրայ է, որոնք ոչ ընթերցուած եւ ոչ պատկեր ունին եւ Հոկտեմբեր 15ին ու Փետրուար 16ին, ըստ Թիգլինդի, պետութեան սահմաններէն դուրս կոխուած են ։

[34] Տակ. Տ. Զ, 33. Յովս. Հն. ԺԸ, 98, վերջինս առանց անուան յիշատակութեան ։

հաւանական է, որ հայրը զինքը երիցագոյն եղբօրմէն նախապատուած ըլլայ. դարձեալ կարելի չէ ընդունիլ թէ Արտաւան 15ին արդէն երկու չափահաս զաւակ ունեցած ըլլայ։ Ուստի Յովսեփոսի անդեկութիւնը սխալուած են մերժել եւ դրամներուն համար ուրիշ մեկնութիւն մը որոնել[35]։ Եւ այսու արդէն կասկածելի կը դառնայ Արտաւանի Ատրպատականի վրայ թագաւորելը։ Յովսեփոս դուրս ձգած է Գոտարզի յաջորդը՝ Վոնոն արքայից արքան, որ իրապէս Ատրպատականէ դաւ բարձրացած է (Տակ. Տ. ժԲ, 14) եւ Արտաւանի յիշեալ որդւոյն յաջորդ կը նշանակէ անոր Վաղարշ եղբայրը (Հն. Ի, 74)։ Տէօրլէր փորձած է, այս անտեսումը մեկնել Յովսեփոսի աղբիւրէն, որ պարթեւ թագաւորներու ծանօթագրուած ցանկ մը եղած է անշուշտ։ Յովսեփոս սխալմամբ անտեսած է Վոնոնի թագաւորութիւնը, որ 51 տարւոյն մէջ կ'ամփոփուէր լինալէս եւ այս պատճառաւ միայն ծանօթագրութեան մէջ կը յիշուէր։ Ուստի արտամարտական հետեւութեամբ Տէօրլէր ազգակցական կապը կը վերացնէ Վոնոնի եւ զայն Գոտարզի եղբայրը կ'ընէ (26. 28)։ Սակայն այս ճամբան անել է. Վոնոն 51ին արդէն յառաջացած տարիքի մէջ ըլլալու էր, եւ իր որդին Վաղարշ այր կատարեալ էր եւ տարեկից Գո-

[35] Արդեօք Ատրպատականի Ոնոնին իշխանութեան սկիզբներէ՞ն են։

տարգի եւ Վարդանի, որ 45ին իր ուժին բարձրակէտին վրայ սպանուեցաւ (Տակ. Տ. ԺԱ, 10)։ Ուստի Վոնոն երկրորդին սերունդի մը կը պատկանէր եւ ըստ տիրող կարծիքին, Արտաւանի միայն եղբայրը կրնայ համարուիլ (Wroth, cat. 178 յջ.)։ Յովսեփոսի աղբիւրն երկու եղբայրները մէկ անձի վերածած է, նոյնը տեղի ունեցած է նաեւ դիւցազնավէպին մէջ. Արտաւան եւ Վաղարշ երկու արքաները Բէյ–Սարոյ ժողովրդական դիւցազնին մէջ միաւորուած են։ Այսպէս յանիրաւի վերագրուած է Արտաւանի, իր եղբօր Վոնոնի, թէ՛ Վաղարշի հայրութիւնը եւ թէ՛ Ատրպատականի թագաւորութիւնը։

Կը տեսնուի ուրեմն, թէ Արտաւանի ծագման մասին Տակիտոսի վրայ հիմնուելով՝ հանուած եզրակացութեան դէմ բերուած փաստերը տկար են եւ անհաստատ։ Արտաւան եւ իր որդիները Վրկանի մէջ արմատացած են, իսկ Վոնոն եւ իրենները Ատրպատականի մէջ։ Երբ 51ին թագը կրտսերագոյն ցեղին անցաւ, այն ատեն միայն իշխանութիւնը դարձեալ արեւմուտք փոխադրուեցաւ։ Վոնոն 15ին հիւսիս-արեւմտեան փոքր տէրութեան թագաւորն եղած ըլլալու է, երբ Արտաւան հայ Վոնոնին հետ կռուի մէջ էր։ Ամբողջ իր երեսնամեայ եւ աւելի երկարատեւ կառավարութեան միջոցին Արտաւան իր անունը արեւմուտքի մէջ արմա-

տացած էր եւ ընտելացած անոր մեղմագոյն քաղաքակրթութեան։ Երբ 51ին Վոնոն եւ անոր վաղահաս մահէն ետքը նոյն տարին իսկ՝ անոր որդին Վաղարշ պարթեւական թագին տիրացաւ (Տէօրլէր, 20 յջ.), պետութեան ծանրակշռոր կրկին հին իրանեան մշակոյթի արեւմտեան երկիրները վերադարձաւ։ Բայց արեւելքը այս անդրադարձութեան հանդէպ անտարբեր չմնաց. այս նոր ուղղութեան հետեւութիւնն եղաւ, Պարթեւաստանի կից, մինչ այն արքունի երկիրներուն ապստամբութիւնը եւ Վրկանի ինքնավար պետութեան կազմութիւնը։

Արդէն 55ին Թագապահանջ մը գլուխ բարձրացուց նոր արքային դէմ (Տակ. Տ. ԺԴ, 79)։ Ասոնք անոր դրամները նոյն տարւոյն Դեկտեմբերէն մինչեւ 58ի Յուլիս (Վրոթ, 180)։ Թէ արքային կրցած ըլլայ զըսպել զայն, այդ չ՚աւանդուիր մեզի, բայց արդէն 57ի համար կը պատմուի Վրկան ծանր ապստամբութիւն մը, որ արգելք հանդիսացած է արքայից արքային՝ Հռոմի դէմ՝ հայ գահին վրայ թագաւորող իր եղբօր օգնութեան հասնելու (Տակ. Տ. ԺԵ, 24 եւ վերը Գլ. Ա, յօդ. 2)։

Հոսկէ կարելի է տարակուսի ենթարկել այս տարիներու պատմական երկու կարեւոր շարժումներուն իրարու հետ ունեցած աղերսը։ Մանաւանդ թէ Տակիտոսի մէկ տեղիքը անոնց նոյնացումին կը դրդէ զմեզ։ Տակիտոս Թագապահանջը, որուն երեւան

դալով 55ին Վաղարշ ստիպուած եղաւ Հայաստանը պարգեւելու, Vardanis regis filium, Վարդան թագաւորին մէկ որդին կ'անուանէ։ Գրեթէ ընդհանրապէս Vardanis անունն ուղղական ըմբռնուած եւ ասով Վարդան անունով Վաղարշի ապստամբ որդի մը կեանք առած է[36]։ Սակայն մեզի հասած ընթերցուածն ունի սքանչելի իմաստ մը. Արտաւանի մէկ թոռը, անշուշտ Վրկանի մէջ հաստատուած արքունի գծին ապօրինի մէկ ծնունդը, ասոր կանգնած է Վաղարշի ճիշդ այն տարիներուն, երբ ան Վրկանի ապստամբութեան պատճառաւ մեծ նեղութեան մէջ էր։ Վարդանի այս որդին ապահովաբար ապստամբ Վրկաններու թագաւորն է[37]։ Հիւսիս-արեւելքի նախկին արքայազինները զինքը 55ին ժառանգութենէ կորզած են եւ արեւմուտքի անհաճոյ արքայից արքային դէմ ըեմ բարձրացուցած[38]։

Ուրեմն՝ 55է մինչեւ 60՝ ներքին ծանր կռիւները մղուած են ժառանգական իրաւունքով գահի կոչուած նոր գծին կողմանէ

---

[36] Տակ. Տ. ժԳ, 7, հրատարակիչներէն սրբագրուած։ Ասոր հակառակ ունի Գուտշմիտ 130, ուղիղ ընագրէ մը առաջնորդուած։

[37] Եթէ Տակիտոս երկու շարժումներուն նոյնութիւնը չէ ճանչցած, այն ատեն արեւելեան դէպքերու համար երկու տարբեր աղբիւրներ գործածած է. տես Klio, ժԹ։

[38] Թէ այդպիսի իշխանութիւններ դեռ կային, կ'ապացուցանէ 55ին Վաղարշի կողմէ անոնց Հռոմի պատանդ տրուիլը (Տակ. Տ. ժԳ, 9)։

այն տարրներուն դէմ, որոնք նախապէս մարդկային կեանքի մը տեւողութեամբ տիրած էին պետութեան վրայ։ Կիսով չափ յունացած Վաղարշի քաջութիւնը՝ միացած արեւելեան Իրանի կարգ մը դէպքերու հետ՝ արեւմուտքին հնարաւորութիւն տուած է այս անգամ արեւելքէն եկող թագաւորն ետ մղելու։ Սակայն 60ին Հռոմի միջամտութիւնը պետութեան երկուքի՝ պարթեւ եւ Վրկան անկախութիւններու՝ տեւական բաժանումը յառաջ բերած է։

Ներոնի օրով՝ Արտաւանի ապստամբութենէն Վրկանեան առանձին պետութեան մը կազմութեան առաջնորդող՝ պատմական յեղաշրջման միտքն հասկնալէ յետոյ, հարց կը ծագի, թէ ի՞նչ էր տարածութիւնը Վրկան իշխանութեան, որմէ սկզբնաւորած է այս զարգացումը։ Արտաւանի տոհմային իշխանութիւնը կը տարածուէր Վրկանի եւ Կրմանի վրայ (Տակ. Տ. Զ, 36). Վրկանով կը նշանակուի հոս հիւսիսային լեռնադաշտին բերրի երկիրը, իսկ Կրման անունն է անկէ հարաւ բարձրաւանդակի անապատին։ Տակիտոս այս անունով կը նշանակէ հոս՝ երբեմն Պարթեւստանի վերաբերող Նոր-Կրմանը եւ ոչ թէ հին Կրմանն իր պարսկական ընդարձակութեամբ։ Ուստի Արտաւանի տոհմային իշխանութիւնը կը պարփակէր իր մէջ Արշակունիներու հին պարթեւ-վրկանեան բնադաւառը․ այս գաւառին պարսիկ-

ներէ տիրապետուած մասերուն յետս դարձումը բարձրացուցած է նոր իշխանին ազգային ճոխութիւնը։

Արտաւանի իշխանութեան զարգացման պատկերն այսպէս կրնանք ստուերագծել։ Իր պետութեան հիմը դրած է Պարախոա-թրայի մէջ եւ շուրջը գտնուող երկիրներուն՝ Վրկանի Աստաւենէի եւ Նիսայայի մէջ։ Անկէ մղած է պարսկական մարզը, որով տիրացած է Կրմանի նախապէս պարթեւական մասին։ Յետոյ հպատակեցուցած է արեւմուտքը եւ իր Վոնոն եղբայրը թագաւոր կարգած է Ատրպատականի։ Հռոմէացիներու հետ առաջին բախումէն ետքը Հարաւ-արեւելքի մէջ գրաւած է Արէան, ուր Հնդիկ-պարթեւական Գոնդոփար թագաւորը զինքը դեռ չէր կանխած։

Եթէ՝ Վրկանեան առհմիկ իշխանութեան մը վրայ հիմնուած, հիւսիս-արեւմտեան իրանեան մեծ պետութեան մը կազմութիւնը 10էն 15 տարիներու շրջանին տեղի ունեցած է, սակայն մինչ նոյն տարիներուն մէջ երկրորդ պարթեւական մեծ տէրութիւն մը կերպարանաւորուած է հիւսիս-արեւելեան Հնդկաստանի եւ Հարաւ-արեւելեան Իրանի մէջ։ Շակերու արշաւանքի ընթացքին արդէն (Ք. առաջ 127ին) Հարաւ-արեւելեան գաւառներու մէջ՝ պարթեւ թագաւորներու տակ՝ պետութիւն մը կազմուած էր։ Այս պետութեան պատմութիւնը մեր միակ աղ-

բիւրներէն՝ անոր թագաւորներու դրամնե-րէն, պայծառօրէն երեւան հանած է V. A. Smith (ZDMG, Կ, 49 յջ.)։

Մանօթ են մեզի կարգ մը, մեծաւ մասամբ ոչ-արշակունի անուններով, պարթեւ թագաւորներ, որոնց առաջին ներկայացուցիչներ՝ դատելով դրամներու գտնուած վայրերէն, իշխած պէտք են ըլլալ Արաքոսիոյ եւ Ծակաստանի մէջ։ Այս երկիրներու մէջ կարգը յանկարծ կը խզի, բայց իր ճշգրտոյ շարունակութիւնն ունինք Տաքսիլայի հիւսիս-արեւմտեան պետութեան մէջ (Smith, 52 յջ.)։ Երկարատեւ իշխողներու շարքէ մը ետքը հոս երեւան կ'ելլէ Գոնդոփար թագաւորն, որու դրամներուն կը հանդիպինք, հին Հնդիկ-պարթեւական պետութենէն զուրս՝ գրեթէ ամբողջ Պենջաբի եւ Հարաւ-արեւելքի իրանեան բնագաւառներու՝ Արաքոսիոյ եւ Ծակաստանի մէջ։ Ըստ այսմ սա, իբրեւ մեծ աշխարհակալ մը, Ինդոսի շրջանը միացնելով Հարաւ-արեւելեան Իրանի հետ նոր ընդարձակ պետութիւն մը հիմնած է։ Թէ Գոնդոփար իշխած է Արտաւանի եւ անոր որդիներու հետ միաժամանակ, այս Հնդիկ ժամանակագրութեան հաստատուն կէտերէն մին է[39]։ Մեր աղբիւրներուն համաձայն[40]

[39] Տես իր մասին W. Otto, PWRE, Թ. 183 յջ., յօդ. Hyndopherres։

[40] Տես Sallet, Nachf. Alex., 158. Oldenburg, Ztschr. f. Num., Ը, 291. Smith, 65. Otto, 185 եւ Sénart, Notes d'épigr. ind., VIII., Série XV, 119։

Գոնտոփար՝ 20—21ին իշխանութիւնը ձեռք առած է եւ 46—47ին դեռ կ՚իշխէր։

Հիմնադրին մահէն անմիջապէս ետքը՝ Գոնտոփարի պետութիւնը քայքայած է, վասն զի Գոնտոփար անժառանգ մեռնելով (Otto, 191) ազգականները բաժնած են անոր ժառանգութիւնը։ Այս բաժանումը տեղի ունեցած է 50էն քիչ ետքը։ Արեւելեան Իրանի բաժնին ժառանգորդը յաջորդ տարիներուն իր բաժինը մեծապէս ընդարձակած է ի վնաս պարթեւ պետութեան։ Յայտնապէս կ՚երեւայ թէ Գոնտոփարի այս ժառանգը՝ Վրկանեան խռովութիւններէն օգտուելով՝ նուաճած է այն ամէն երկիրները, որոնք՝ արքայից արքային դէմ մղուած կռիւներով բազմազբաղ Վրկանները՝ չէին կրնար պահել. 55էն մինչեւ 60 տարիներուն՝ նախ գրաւած է Արեան եւ Դրանգիանան, յետոյ՝ Որոսէն յառաջանալով՝ Պարախոաթրաւի ձորը, իսկ ծովագաւառէն՝ Մարատտան տանող հարաւային պողոտային ովասիսները իր իշխանութեան ծիրին մէջ առած է։ Ուրեմն Վրկան պետութիւնը պարթեւներու եւ Արէացիներու միջեւ գրեթէ ոչնչացած էր եւ կը սահմանափակուէր Կասպից ծովու եզերքին ու անոր հարաւէն սահմանակից հին Պարթեւաստանի արեւմտեան գաւառներուն մէջ, երբ հռոմէական միջամտութիւնը 60ին պարթեւական խաղաղութիւնը բերաւ եւ անոր հետեւութեամբ ազատութիւն գտաւ Արէացիներու դէմ ինք զինքն պաշտպանելու։ Իրապէս ալ Տոխարացիներու

եւ Վրկաններու ճնշման տակ՝ երկրով տարածուն, բայց ներքուստ ակար Արշակի պետութիւնը շուտով ընկճուեցաւ, եւ Վրկանները, հետզհետէ ի վնաս անոր, դէպի արեւելք ընդարձակուեցան։ Վրկանի պետութիւնը դէպի արեւելք իր այս տարածման ժամանակ ժառանգորդ կը հանդիսանայ Ներոնի գաղափարներուն, որոնց վրայ տարբեր պիտի խօսինք։

3. Վրկանի երթեւեկի ճամբաներուն հռոմէական քաղաքականութեան համար ունեցած նշանակութիւնը։

Վրկան պետութիւնը, երբ Հռոմի դաշնակցութիւնը կը խնդրէր, կը ներփակէր իր մէջ միայն Կասպից ծովու արեւելեան եզերքի երկիրը եւ Էլբրուզէ հարաւ պարթեւական Կոմիսենէ եւ Խոարինէ գաւառները։ Անկէ դուրս Վրկանի թագաւորը պահանջ ունէր արեւելքի սահմանակից երկիրներու վրայ, մինչեւ տոխարեան սահմանը, եւ կը յուսար Հռոմի դաշնակցութեամբ դիւրաւ իրագործել իր այս փափաքը։ Սակայն որչափ որ Վրկան պետութիւնը տարածութեամբ սահմանափակ էր, իր երթեւեկային–քաղաքական դիրքը չէր տուժած. Իրանեան արեւելքի եւ արեւմուտքի հաղորդակցութեան ուղիները իր ձեռքին մէջ էին։ Անցման երկրի այս նկարագիրը Վրկանի համար նշանակալից եղած է։

Իրանեան բարձրաւանդակի եզերայեռները միայն՝ բաւականին ջրարբի են բարձր մշակոյթով ժողովրդեան մը բնակավայր դառնալու համար: Միջին՝ ընդարձակ բարձրաւանդակը չորամաք է եւ միայն հոն մշակելի, ուր լեռներէն իջնող գետերն ու առուակները դեռ չեն անյայտացած: Այսպէս արեւելեան եւ արեւմտեան Իրանի միջեւ իբրեւ հաղորդակցութեան յաջնանիստ արգելք մը տարածուած է Խուժաստանի անապատն, որ հնութեան մէջ Պարթեւաստանի եւ Կրմանի անապատ անունը կը կրէր: Միայն հիւսիսային կողմէն Խորասանի լեռնաշղթան՝ շրջապատի բերրի գաւառներովը՝ հին Մարաստանը կը կապէ Հերատ գետի եզերքին ովասիսներուն հովտին հետ (Գեոյլինգ, 454 յջ.):

Հոս միայն հնարաւորութիւն կայ ցամաքի եւուն երթեւեկի մը պարթեւական արեւմուտքի եւ արեւելեան իրանեան մշակոյթի կեդրոններու եւ անկէ անդին հնդիկ եւ չին աշխարհներու միջեւ: Անկէ ընթացած է Աղեքսանդրի ճամբան դէպի Բակտրիա եւ Հնդկաստան (Գեոյլինգ, 484): Իսիդորի նկարագրած արքունի ողոտան Մարաստանէն՝ Կամբադէնէն եւ Խոարինէն կտրելով մինչեւ պարթեւական հարթավայր, Վրկանի լեռնադաւառէն անցնելով Ապաւուրինէն դէպի Մարգիանա ովասիս եւ մինչեւ Բակտրիայի եւ Հնդկաստանի սահմանը կը հանէ: Անկէ հարաւէն՝ պարսկական լեռներու հիւսիս-

արեւելեան ստորոտէն, անապատի ճամբայ մը Միսարինէի մէջէն ուղիղ Դրանգիանա կ'երթայ (Tab. Peut.)։ Ուրեմն ով որ, ինչպէս Ներոնի օրով Վրկանի Թագաւորը, այս երկրին եւ Միսարինէի կը տիրէր, կ'իշխէր կատարելապէս նաեւ պարթեւ արեւմուտքի եւ անդրասիական վաճառականութեան նշանաւոր միջակէտներուն միջեւ անհրաժեշտ ցամաքային երթեւեկին վրայ։

Հռոմէական քաղաքականութեան համար Վրկանեան դաշնակցութիւնը մեծ կարեւորութիւն կը ստանար այս երթեւեկային նպաստաւոր դիրքին պատճառաւ։ Ռազմագիտօրէն Հռոմէացւոց հնարաւորութիւն կու տար երկու կրակի մէջ առնելու իրենց պարթեւ թշնամին. բայց աւելի քանի որ Վրկանները կը տիրէին պարթեւական ցամաքի վաճառականութեան ուղիներու վրայ, որու կը պարտէին Միջագետի կէս-յունական շահաստաններուն իրենց ծաղկումը, ա՛յս տնտեսական ճնշման հզօր միջոց մըն էր Սելեւկիայի եւ Վաղարշակերտի իշխողներուն վրայ։ Դէպի Բակտրիա եւ Հնդկաստան տանող ուղիներու պահապանին հետ դաշնադրութեան մը միայն՝ Հռոմի կատարեալ երաշխիք մը կու տար Պարթեւներու հետ կնքուած դաշինքին անսասանութեան (տես վերը Գլ. Ա, յօդ. 4)։

Վրկանի Պարթեւներու ձեռքէն ելլելէն ետքը՝ բոլորովին ուրիշ հնարաւորութիւն-

ներ կը ներկայանային Հռոմի կառավարութեան. վասն զի Աղուանից երկրէն՝ Կասպից ծովու եւ Օքսոսի վրայէն, որ Վրկանի հիւսիսային սահմանագլուխն էր, ջրոյ հին ճամբայ մը կը տանէր անդրագոյն Ասիոյ վաճառքներու առեւտուրի բազմաթիւ կեդրոնները։ Թէ այս ուղիով հնդկական արտադրութիւններ Պոնտոսի յունական քաղաքները կը հասնէին, այս Ներոնի ժամանակէն շատ առաջ ծանօթ է եւ բազմիցս յիշատակուած մատենագրութեան մէջ։

Ներոն Կասպից ծովու իր ձեռնարկութիւններու մէջ Սելեւկոս Նիկատորի հետքերուն վրայէն ընթացած է։ Այս յունական արքունի տան Ասիոյ մեծագոյն իշխողը, իր որդւոյն՝ Անտիոքոսի գահակցութեան շրջանին՝ ուրեմն 285—282 տարիներուն, Պատրոկլէսի առաջնորդութեամբ արշաւախումբ մը առաքած է Կասպից ծովը խուզարկելու։ Ծովակալը Կովկասի շղթային հիւսիսային լեռնալէն նաւարկած է ծովեզրն ի վեր մինչեւ այն վայրը, ուր կարծած է Կասպից ծովու հիւսիսային ովկիանոսին միացման տեղը հասած ըլլալ (Ստրբ. ԺԱ, 507, յջ. եւ Պլին. Զ, 36)։

Պատրոկլէսի մեկնակէտին որոշումը հին աշխարհագրութեան դժուարին խնդիրներէն մին է. սակայն լաւագոյն լուծումը յաջողած

է տալ Հերման [41] մեկնակէտը Սեւիտ–բուռի գետաբերանէն, ինչպէս կ'ենթադրուէր ցարդ, քանի մը կիլոմեթր դէպի արեւմուտք փոխադրելով, հոն ուր ծովեզրը յանկարծ իր միջօրէականի ուղղութենէն արեւմտեան–արեւելք կը դառնայ։ Այս կէտէն հաշուելով Պատրոկլէսի տուած թիւերն ճշդիւ կը համաձայնին։ Աղուաններու ծովեզրը կը հասնի մինչեւ Թերէք, Որսոսի գետաբերանը կը նոյնանայ Ուտրոյի հետ եւ Ցաքատրոէսի գետաբերանը Կարա–բուղա ծովախորշը կը փոխադրուի։ Հերման յաջողած է միանգամայն ապացուցանել, թէ հին դարերուն Ուտրոյը դեռ ցամքած չէր, այլ թէ Որսոսի՝ ինչպէս կը կոչուէր այն ատենները Ամու–Դարիան, մէկ ճիւղը, Ուտրոյի անկողնէն Կասպից ծով կը թափուէր։ Ասով Որսոսի Կասպից ծով հասնիլն եւ Աղուաններու երկրէն դէպի Բակտրիա գետուղին իրականութիւն կ'առնուն։

Հնդկական վաճառներու ճամբան եօթը օրէն Հինտիքուշի վրայէն նաւարկելի Որսոս կը բերէր, գետի վրայէն Կասպից ծով, ծովէն ապա Կուրի գետաբերանը եւ անոր վրայէն՝ անցնելով Աղուաններու երկրէն՝ կը մտնէր Վրաստան, ու կիրճերը հինգ օրէն կտրելով Սարապանայի քով նաւարկելի Փասիսը, ուրկէ Պոնտոսի յունական երթեւեկի ցանցին կը հասնէր (Ստրբ. ԺԱ, 506)։

---

[41] Gött. Abh. ԺԵ, 4. 7 յէ., PWRE, Ժ. 2281. յօդ. Kaspisches Meer։

Պատրոկլէս իր թագաւորին առաջարկած է նոյն իսկ համբուն վերջին մասն ալ ջրանցքի մը շինութեամբ նաւարկելի դարձնել եւ կ'րսուի, թէ Սելեւկոս այդպիսի ծրագիր մը կը մշակէր, երբ Պտղոմէոս Կերաւնոսի մահառիթ դաւադրութեան զոհ գնաց (Պլին. Զ, 53)։ Այս վաճառքի ուղին սակայն, որու աշխարհամիջեան երթեւեկի համար ունեցած նշանակութեան ամէնէն առաջ Հերման ուշադիր եղած է (PWRE, 2290), միակը չէր, Հնդկաստանի եւ արեւմուտքի միջեւ կար դեռ ուրիշ հիւսիսային հաղորդակցութիւն մը։ Պատրոկլէս, իրմէ ետքը Պոմպէոսի հետախոյզներն անգամ մը եւս, անդուոյն վրայ ստուգած են, անդրկասպեան նաւային երթեւեկ մը (Պլին. Զ, 53)։ Կը տեսնենք ուրեմն, թէ Ներոն իր Կասպեան վաճառականական ծրագիրներով շինած է հին հիման մը վրայ եւ արդէն ծանօթ իրողութիւններ իր անտեսական-քաղաքական հայեցակէտին մէջ է առած։

Հռոմէական վաճառականութեան փափաքն էր Հնդիկ եւ Ներքին-ասիական վաճառականներու հետ հաղորդակցութիւնն անկախ ընել պարթեւ միջնորդութենէն եւ անմիջական կապ մը հաստատել անոնց հետ։ Այս ծրագիրը իրականալի էր Ներոնի ժամանակ միայն, այդ միջոցին պարթեւ եւ Վրկան յարաբերութիւնները ծանրապէս պրկուած էին, իսկ այս պրկումը կրնար դէպի Բակ-

տրիս Հռոմէական երթեւեկը պարթեւ ազ-դեցութենէն ազատ պահել : Ներոնի կառա-վարութիւնը, որ ուրիշ վայրերու հետ Հռո-մէական վաճառականութեան անկախութիւնը ձեռք բերած էր, կարող էր Վրկանի հետ դաշնադրութեամբ նոյնն ընել Բակտրիայի համար ալ :

Պարթեւներու վտանգուած դրացուն հետ դաշնադրութիւնը կրնար Վրկանի մէջ հիմ կազմել տեւական շահակցութեան, որ իր կարգին Հռոմի վաճառականական ծրա-գիրներուն անհրաժեշտ պայմանութիւնը կ'երաշխաւորէր : Հնդկաստանի եւ Եթով-պիայի մէջ պտղոմեան մեծ քաղաքականու-թեան հետեւողին՝ Ներոնի, որ իր նոր լէ-գէոնին՝ յունական մեծ աւանդութեան վրայ գիտակցաբար յենլով Աղեքսանդրի փաղանգ յորջորջումն ընտրած էր, Կասպից ծովու սե-լեւկեան ծրագիրներու վերանորումը շատ լաւ կը պատշաճի : Բոլոր այս պատճառներն իրա-ւունք կու տան մեզի Ներոնեան դէպի Կաս-պեան դռները եւ ծովը մտադրած արշաւին իմաստը որոնել այն երթեւեկային-քաղաքա-կան ծրագիրներու մէջ, զորս պարզեցինք վերը :

Նոր ձեռնարկն անհրաժեշտօրէն երեք հանդրուան պիտի ունենար : Ի սկզբան հարկ էր ձեռնարկին պոնտական խարիսխն ապահո-վել· արդէն Հենտրքարն (Ներոն, 223 յջ.)՝ պոնտական երկու հպատակ պետութիւններու

բարձունք ուղիղ կերպով կառկառեան ծրագիրներու հետ ալերաի մէջ կը դնէ: Պոնտական նորակազմ նահանգէն կարելի էր անցնիլ մինչև Կասպից ծով երկրամասին դրաւումին: Վրաստան 56ին Կորբուլոնի քաղաքագիտական ջանքերու շնորհիւ արդէն պետութեան համար ապահովուած էր (Գլ. Ա, յօդ. 1): Միայն Ալուանից աշխարհը, այս Կուրի և Կասպից ծովու միջև տարածուած կարևոր երկիրը, դեռ կարելի չէր եղած կրկին կցել Հռոմի հետ (Անդ): Ալուանները կիսավայրի ժողովուրդ մըն էին, որոնց քաղաքակրթութենէ թափուր կեանքին կենդանի մէկ պատկերը պահած է մեզի Ստրաբոն, օգտուելով Թէոփանէս Միտիլենացւոյ գործէն (ԺԱ, 501 յջ.): Անոր տեղեկութիւններու ընութիւնը կը համոզէ զմեզ, թէ Հռոմի կառավարութիւնը, եթէ կ'ուզէր իր անդրկասպեան ծրագիրներն իրագործել, այս ժողովրդեան սանձը պէտք էր ձեռք անցնել:

Ալուաններն աւելի վաչկատուն էին քան Վրացիները և աւր հեռաւորութեամբ՝ բառ Ստրաբոնի, բարբարոսներու պատերազմական ամբողջ վայրենութիւնը պահած էին: Շատ գեղեցիկ և խաշնարածական ցեղ մըն էին, բայց հոգւով պարզ և առանց բարձրագոյն քաղաքակրթութեան: Գետահովտի արգաւանդ երկիրն իրենց հօտերուն համար սքանչելի արօտավայրեր ունէր և առանց աշխատութեան, կամ շատ դոյն վաստակի մը փո-

խարէն, երկու կամ երեք հունձք կու տար, եւ տեղի բարձրագոյն քաղաքակրթութեան մը ամէն գրգիռ աւելորդ կը դառնար։

Աղուանները ինչպէս որ հողի ատթական մշակումին համար միայն փայտեայ արօրով կը գոհանային, այնպէս ալ վաճառականութեան մէջ միայն փոխանակութիւնն ունէին։ Դրամ, չափ ու կշիռ կամ անծանօթ էին կամ չունէին այն ճշդութիւնն, որ միջերկրեայց համար ինքնայայտ էր. անոնց թուական դրութեան մէջ կը պակսէր հազարը։ Երթեւեկի անընդհատ զարգացումը նպաստաւորած էր դաստատարրաններու կարեւոր տարանջատումը, որ Պոմպէոսէ առաջ քանուեց ինքնակայ պետութիւններու մէջ քաղաքական պատակտումի իր կրկնապատկերը կ'երեւցնէր [42]։

Միասնական պետութեան մը կազմութիւնը կ'երեւայ թէ հայ-վրական ազդեցութեան տակ յառաջ եկած է։ Թագաւորէն ետքը ամենազդեցիկ մարդը քրմապետն էր, որ վրական սահմանին մօտ նուիրական գաւառի մը մէջ կը բնակէր։ Այս գաւառը նուիրուած էր երկնքի մեծագոյն դից՝ Արամազդայ, արեգական դից՝ Միհրի եւ լուսնի դից՝ Անահիտի։ Հոն պաշտուած աստուածներն,

[42] Քաղաքական եւ լեզուական այս երեւոյթէն Տոմաշէկ այն տեսութեան յանգած է, թէ Աղուանք հաւաքական անուն է արեւելեան Կովկասի ոչ-արիական ժողովուրդներու։

ինչպէս նաեւ ի պաշտօնէ քուրմերու մեծ բազմութիւնը՝ Հայաստանի եւ Կապադովկիայի՝ իրանականին միրձեցող պաշտամունքը կը յիշեցնեն[43]: Տարուէ տարի քաղութեան համար մատուցուած մարդազոհը կը բնորոշէ՝ այս ժողովրդեան բոլորովին նախնական բրտութիւնը:

Միայն զինուորական տեսակէտով Աղուաններ, իրենց միութենէն յետոյ, ուշադրութեան արժանի զօրծօն մըն էին: Պոմպէոսի դէմ հանած էին 60.000 անձ հետեւակ եւ 12.000 ձիաւոր, առանց մէջ մեծ թիւ կը կազմէին իրանեան ազատազինութեամբ զրահաւորները[44]: Եթէ այս թուերէն կարեւոր զեղչ մ'ընենք ի հաշիւ հեղինակին երեւակայութեան, սակայն եւ այնպէս անոնց զինուորական նշանակութիւնը կ'երաշխաւորէ այն մեծ դերը, զոր անոնք անեւականօրէն ունեցած են հարաւէն իրենց դրացի երկիրներու կռիւներուն մէջ: Անոնց մեծագոյն ոյժը կը կայանար, այն ատեն յարաբերութեան մէջ, զոր ունէին ազգակից սարմատական ցեղերու հետ, որոնք լեռներէն անդին կը բնակէին եւ միշտ սիրով օգնութեան կը փութային (Տակ. Տ. Զ, 32 եւ ԺԱ, 9):

Աղուաններն ապահովաբար հիւսիսային

[43] Հակառակամարտ միհրական կրօնի այս փոքրասիական մայրական պաշտամունքի մասին տես Cumont, Mon. myst. Mithr. I, 9 յջ. եւ 231 յջ.:

[44] Թէոփան առ Ստրբ.ի ԺԱ, 502. Պլուտ. Պոմպ., 34. Աճա., 34. Դիոն. ԼԶ, 54:

*տարմատական մողովուրդ մըն էին, որ իր նոր դրացիներու ազդեցութեան տակ հեռացեալ է իրանեան քաղաքակրթութեան երանգ մ'առած ։ Ներոնի ժամանակները զինուորական մեծ ուժով միանական պետութիւն մը էր կազմէին, որ արեան զօդով կապուած էր Հիւսիսի Սարմատներուն հետ ։ Հռոմէացիները այս պետութիւնը, որ Կասպից ծովու մօտերին կ'իշխէր, պէտք էին հպատակեցնել կամ ջնջել, եթէ կ'ուզէին այս ծովուն վրայ իրենց վաճառականութեան առաջնել ճամբայ մը հարթել ։ Ուրեմն դէպի Վրկաններն եւ Բակտրիա ուղին կ'ընթանար ապուանեան մարտէն, որ ամբողջ ձեռնարկին երբորդ՝ զուտ առեւտրական հանդրուանը պիտի հանցնէր ապառօրէն*[45] ։

## 4. Ներոնի պոնտական քաղաքականութիւնը ։

*Երիմի թերակղզին հնութեան մէջ առեւտական եւ մշակութային փոխյարաբերութիւններով սերտօրէն կցուած է Սեւ ծովու հարաւային եզերքի նաւահանգիստներու հետ ։ Այս հնօրեայ յարաբերութիւններն իրենց քաղաքական հետեւանքն ունեցան, երբ Պոնտոսի Միհրդատ Եւպատոր թագաւորը Բիւթանիան, Պափլագոնիան, Կողքիսը եւ Բոս-*

---

[45] *Զինուորական պատրաստութիւններու մասին տես յաջորդ գլուխը ։*

փորձեան պետութիւնն իր հօրենական իշխանութեան հետ միացուց։

Պոմպէոս 64ին պոնտական այս մեծ տէրութիւնը Հռոմի համար գրաւեց։ Բոսպորական արեւմուտքը մինչեւ Ալիւէ անդին նոյն ատեն հռոմէական նահանգի վերածուեցաւ, որ մինչեւ Մարկոս Աւրելիոսի ժամանակը ծերակոյտի վարչութեան տակ մնաց։ Հիւսիսն ու արեւելքը նախ Միհրդատի որդւոյն՝ Փառնակի եւ ապա Պոլեմոն գաղատացւոյն իշխանութեան տակ հպատակ տէրութիւններ կազմեցին։ Բոսփորեան պետութեան մէջ յետոյ գահ բարձրացած է հին պոնտական արքունի տան իգական գիծը, մինչ Պոնտոս եւ Կողքիս մինչեւ 63, երբ անոնք հռոմէական հողերուն կցուեցան, Պոլեմոնեան հարստութեան ձեռքն էին։ Ներոնի կառավարութեան սկիզբը հռոմէական երկրին այս հիւսիս-արեւելեան անկիւնն երկու հպատակ տէրութիւններ գոյութիւն ունէին։ Բոսփորի մէջ կ'իշխէր Կոտիս Ա., որ 46ին Կղաւդիոս անոր երիցագոյն եղբօր՝ Միհրդատի դէմ թագաւորեցուցած էր. Պոնտոսի մէջ կը տիրէր 37էն ի վեր Պոլեմոն Բ.ր՝ Կալիգուլա կայսեր երախտագիտութեան բարեկամը[46]։

Աւգոստոս արդէն համարած էր, թէ Սեւ ծովու եզերքները տարածուած այս պետու-

[46] Տես Բրանդիս PWRE, III, 779 յջ., յօդ. Bosporus, 2։

թիւնն իր քաղաքակրթական դերը կատարած եւ հիւսիս-արեւելքի ժողովուրդները Հռոմի անմիջական ծիրին մէջ առնուելու հասուն դարձուցած էր: Իր կառավարութեան վերջին տասնամեակին ծագած գերմանական եւ իլիրական դժուարութիւնները միայն արգելք եղած են Պոնտոսի կցման իր ծրագիրներն իրագործելու: Առաջին կայսեր այս դիտումներուն կ'ուզեմ վերագրել պոնտական հին պետութեան գործերու համար կայսերական կենդրոնական-պաշտօնարանի մը կազմութիւնն, որու գոյութիւնը Կղաւդիոսէ մինչեւ Տրայանոս վերջերս Ռոստովցէֆ հաստատըված է (Ann., 15 յջր.):

Իբրեւ ժառանգ հին թագաւորներուն՝ կայսրը Բիւթանիայի եւ Պոնտոսի ծերակուտական նահանգներուն մէջ ունէր ընդարձակ արքունի հողեր, որոնք բնակուած էին ձեւական գիւղացիներէ (Rost. Stud., 283 յջ.): Արքունի այս կալուածներուն վրայ, որոնք պետութեան մէջ պետութիւն մը կը կազմէին, կար գործակալ մը, որ փոխհիւպատին կից բոլորովին անկախ դիրք մը կը գրաւէր: Իր անունը դրամներու վրայ կ'երեւայ եւ տարիճանով առաջադաս գործակալներու կարգին կը պատկանէր: Այսուհանդերձ կարելի չէ ենթադրել, թէ այս պարագայիս, կայսերական եւ ծերակուսական կուսակալներու միջեւ փոխանակութիւն մը տեղի ունեցած ըլլայ. այլ իրարու կից կը

պաշտօնավարէին երկուքը, եւ այս իր հիմն ունէր արտաքին քաղաքականութեան մէջ. Բիւթանիայի գործակալը Բոսփորեան պետութեան եւ Հռոմի կառավարութեան միջեւ միջնորդի դերը կը կատարէր:

Ուրեմն Բիւթանիայի եւ Պոնտոսի գործակալը, Միհրդատեան պետութեան մէջ կայսերական շահերու ներկայացուցիչն էր: Մերակուտական նահանգներու արքունի կալուածները կը տնտեսէր, կը հսկէր Բոսփորեան հպատակ պետութեան դժուարին յարաբերութիւններու վրայ եւ հաւանական է, որ նոյն դիրքն ունեցած ըլլայ նաեւ պոլեմոնեան պոնտական պետութեան հանդէպ, թէեւ այս մասին իր կարճառօտ գոյութեան շրջանէն մեզի ո եւ է տեղեկութիւն հասած չէ: Այս պաշտօնէն, առանց մեծ դժուարութեան, կրնար յառաջագայիլ մեծ-պոնտական նահանգին կայսերական կուսակալութիւնը: Կ'ենթադրեմ, թէ այս պաշտօնն արդէն Ագոստոս հաստատած ըլլայ, թէեւ անոր գոյութիւնը Կղաւդիոսէ առաջ միայն հետապընդել կարենանք:

Սեւ ծովու եզերքի երկու հպատակ տէրութիւնները, ինչպէս տեսանք, Ներոնի կառավարութեան սկիզբը դեռ գոյութիւն ունէին: Բայց 60ական թուականին մին արդէն բարձուած էր, իսկ միւսն իր անկախութեան մէջ մեծապէս սահմանաւորուած: Թէ Ներոն Պոլեմոնի պետութիւնը նահանգի վերածած

է, այդ կ՚ատնդուի պատմագիրներէ [47]: Այս դէպքիս ժամանակը, հակառակ Եւտրոպի անճիշդ տեղեկութեան, 63 տարին է, ինչպէս կը տեսնուի նոյն երկրին երեք նշանաւոր քաղաքներու հռոմէական թուականներէն: Ըստ այսմ պարթեւական վերջին պատերազմի միջոցին ծովեզրն՝ Ալիսէ մինչեւ Կովկաս, հռոմէական նահանգ եղած էր:

Բոսփորեան անկախութեան սահմանափակումը սակայն, իր էական նշանակութիւնը կը ստանայ Պոնտոսի թագաւորութեան միաժամանակ նահանգի վերածուելովը: Առջեւնիս ունինք հոս Սեւ ծովու հպատակ պետութիւններու բարձման յօրինուածական ձեռնարկ մը. պետութեան ամփոփական սահմանը Պոնտոսի բովանդակ եզրներու վրայ կը տարածուի, եւ անկախ միջնիշխանութիւններն ամէնուրեք կը ջնջուին կամ թէ իրենց ինքնակացութիւնը կը ջղատուի: Արդէն Հէնորբորն (Ներոն, 226 յջ.) այս կարեւոր ձեռնարկը կայսեր կասպեան ծրագիրներու հետ ճշգօրէն աղերսի մէջ դրած է: Նոր նահանգին երկիրը կազմակերպական խարիսխը պիտի ըլլար կուկասեան միջածովեան երկրին դէմ կատարուելիք գործողութեան:

Մեզի համար մանաւորապէս շահագրգիռ են այն կազմակերպական խնդիրները, որոնք ծագում առած են նահանգային դրու–

[47] S. Nero, 18. Eutr. VII, 14. Aur. Vict. Ep., 5. h. Aug. v. Aurel., 21, 11:

թեան Սեւ ծովու հիւսիսային եւ արեւելեան եզրներու վրայ տարածուելուն հետեւութեամբ։ Գոլխմոնի պետութեան երկիրը կուսակալի մը տակ միացուեցաւ Գաղատիայի հետ, որ արեւելեան լեզէոններու թէ՛ նորակոչներու հարուստ մթերանոցն էր եւ թէ՛ ծեր զօրականներու հանգստարանը (Մարկուարտ, Ա. 202)։ Ասով դյուրութիւն տաս Հայաստանի եւ Վրաստանի սահմաններու վրայ զինուորական ուժեր վարչական միութիւն մը։ Հռոմէական Փոքր Ասիայի ռազմական ծանրակէտը, որ պարթեւական մարտի միջոցին Գաղատիոյ դաշնակից Կապադովկիայի մէջ էր, այս կարգադրութեամբ դէպի հիւսիս արեւելք՝ դէպի Կովկասեան աշխարհները փոխադրուեցաւ։ Նորակազմ «Պոնտոս եւ Գաղատիա» նահանգը յայտնապէս նախատեսուած էր, կայսեր Կասպեան նոր քաղաքականութեան յենարանը դառնալու։

Աշխարհացոյցի վրայ ձգուած ակնարկ մը կը համոզէ զմեզ, թէ նորակազմ նահանգը միայն ռազմամանակեայ նկարագիր ունէր, անոր նեղ եւ երկարաձիգ մարմինն ընդլայնուիլ եւ եզերուորուիլ կը պահանջէր, եւ այս անոր համար կանխատեսուած ռազմական ու քաղաքական դերին պէտականութեան համաձայն զանազան ուղղութեամբ կարելի էր իրականացնել։ Վեսպասիանոս՝ ընդարձակելով՝ արեւելեան ամբողջ քաղաքականութիւնը պաշտպանողականի վերածեց, արեւելեան

Փոքր Ասիոյ մէջ Կապպադովկիան եւ Փոքր Հայքն անոր կցելով՝ զինուորական զօրաւոր սահման մը ստեղծած է Հայաստանի պետութեան դէմ (Մարկուարտ, անդ)։ Իսկ Ներոնի յարձակողական հիւսիս արեւելեան քաղաքականութիւնը, ընական է որ պոնտական նահանգին եզրաւորումը բոլորովին այլ ուղղութեամբ տանէր։ Յուստինեան պետութիւնը, որ 63ին անշուշտ կանխապէս պատրաստուած էր Հռոմի կցուելու, դարձեալ Պոնտոսի հետ միացուելու էր, իսկ «Բիւթանիա եւ Պոնտոս» ծերակուտական նահանգին կայսերական վարչութեան տակ անցնելը, կրնար Փոքր Ասիոյ մէջ նորակազմ նահանգին կարեւոր միաձոյլ զանգուածը տրամադրել։ Ներոնեան հիւսիս-արեւելեան քաղաքականութեան առաջին ձգտումն էր, վերականգնացնել Միհրդատեան նախկին պետութիւնը՝ ստեղծելով մեծ-պոնտական նահանգ մը, որ իր մէջ փակէր՝ Թրակիոյէն մինչեւ Կիմմերեան Բոսփորը՝ հռոմէական ծովեզրները։

Այս նորակազմ նահանգը Աղուաններու երկրին գրաւումին մեկնակէտը պիտի կազմէր. նոր ձեռնարկին կազմակերպական հիմը դրուած է 63ին, յորում պարթեւական մարտին վախճան կը գուշակուէր։ Պարթեւական խաղաղութենէն ետքը, Կորբուլոն կրնար իր պատուիրակները ուղարկել նոր մարտադաշտը հետախուզելու։

# ԳԼՈՒԽ Դ.

## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԶՕՐԱՇԱՐԺԸ

Նախորդ գլուխներու մէջ փորձեցինք պարզել Ներոն կայսեր վերջին տարիներու արեւելեան քաղաքականութեան նպատակները։ Կը մնայ մեզի դեռ ի վեր հանել թէ ի՛նչ պատրաստութիւններ տեսնուած էին արեւելեան մեծ արշաւին համար եւ թէ մինչեւ ո՛ր աստիճանի լրացած էին անոնք վերջին կեսարազունի անկման պահուն։ Եւ այս աղբիւրները բաւական յորդառատ են, վասն զի շատ լրիւ են մեր տեղեկութիւնները հրէական պատերազմի մասին, որ մղուեցաւ գլխաւորապէս արեւելքի զօրաց համար նախապատրաստուած գունդերով եւ դարձեալ վասն զի 69ին՝ չորից կայսերաց տարւոյն մէջ կատարուած զօրաշարժները ճշդիւ յայտնի են։ Ի մասնաւորի մեծարժէք է Յովսեփոսի ծանօթ եւ յաճախակի քննուած լեգէոններու ցանկը, որ Հռոմէական կառավարութեան պաշտօնական տուեալներու վրայէն մեզի գրեթէ անթերի պատկեր մը կու տայ 66ի

գարնան բանակարգամիններու դեսեղման մասին [1]։

Մեր քննութեան եղակէն ալ պիտի ծառայէ, այն զինուորական կացութիւնը, զոր հռոմէական արեւելքն ունէր պարթեւական մարտին վերջաւորութեան։ Այն միջոցին, ինչպէս տեսանք, ասորական նահանգներու մէջ Կորբուղոնի հրամանատարութեան տակ եօթը լիթիւ լեգէոն կար (Գլ. Ա, յօդ. 3)։ Անոնց հինգը կը պատկանէին ասորական բանակին, որ մշտապէս արեւելքի մէջ հաստատուած էր, առանք էին հայկական պատերազմին երեք քաջահամբաւ լեգէոնները՝ Գ Գաղղիականը, Զ Երկաթապատը եւ Ժ Փրետենսեանը եւ Պետոսի երկու փոքրաթիւք լեգէոնները՝ Դ Սկիւթականը եւ ԺԲ Շանթահարը [2]։ Անոնցմէ զատ 60ական թուականին սկիզբը վերին հրամանատարին տրամադրութեան տակ էին երկու դանուբեան լեգէոններ՝ մէզեական Ե Մակեդոնականը եւ պաննոնեան ԺԵ Ապողինարեանը· այս ամէնուն վրայ կ'աւելնային դեռ Դանուբէ եւ Նեղոսէ բերուած պահեստի զունդերը՝ անդրադարձ լեգէոնի մը ստուարութեամբ։ Վերին հրամանատարը 63ին բանակն երկու խումբի բաժնած է։ Իր երկու հայկական լեգէոններով՝ Գ Գաղղիա-

[1] Յովսեփոս՝ Վասն հրէական պատերազմին Բ. 266 յջ.։

[2] Արեւելեան բանակին հինգերորդ լեգէոնի մը յաւելումով մշտապէս ուժեղացումի մասին տես Գլ. Ա, յօդ. 1։

*կան եւ Զ Երկաթապատ՝ եւ Իլիրիայէն ու Եգիպտոսէ ուժեղացումի համար բերուած բնարեալ գունդերով վարած է ինքը պարթեւական վերջին արշաւանքը։ Իսկ կիրթ փրետենեանը եւ Պետրոսի երկու լեգէոնները յանձնած է Աւարիքի պատուիրակին՝ Կ. Կեստոս Գաղղոսի Եփրատի նահանգին պաշտպանութեան եւ Աւարիքի խաղաղութեան ապահովութեան համար (Տակ. Տ. ԺԵ, 26)։ Այս կարգադրութիւնը հիմ առնելով՝ փնտռելու ենք բանակին 66 տարւոյն լեգէոններու այն բաժանման, ինչպէս կը պատկերանան անոնք Յովսեփոսի լեգէոններու ցանկին մէջ եւ կը ներկայացուին Գաղղոսի դէպի Հրէաստան կատարած անյաջող արշաւին վրայ անոր տուած տեղեկութիւններով։*

1. Արեւելեան բանակը 66ի գարնան։

*Վերջին պարթեւական պատերազմին բոլոր արեւելեան բանակաբաժիններու համար կեդրոնական վերին հրամանատարութիւն մը հաստատուած էր։ Արեւելքի նահանգներու կուսակալները պարտաւոր էին Կորբուղոնի զինուորական հրամաններուն հետեւիլ։ Ռանդէյի 63ի նախադաշինքի կնքումով այս արտակարգ հրամանատարութեան շարունակութեան անմիջական պատճառը բարձուած էր։ Թէ՛ արդեօք Կորբուղոն իր արտակարգ լիազօրութիւնը մինչեւ իր յետակոչումը՝*

66—67ի ձմեռը, պատճառ է, այս հարցը հիմնականն նշանակութիւն ունի: Իր 63—66 տարիներուն ունեցած գիրքի մասին մեզի հասած տեղեկութիւններուն յենլով՝ փորձենք իր իշխանութիւններուն պատկերը կազմել:

Նախ և առաջ այս շրջանին կ'իյնայ հաւանաբար՝ Կորբուղոնի հովանաւորութեան տակ Աղուաններու երկրին հնազանդումը: Ուրեմն պարթևական պատերազմին փորձ վարչին յանձնուած էր միանգամայն հիւսիարեւելքի մէջ նոր պատերազմին նախապատրաստութիւնն. ասկէ կը հետեւցնենք թէ պոնտական գինուորական նորակազմ շրջանը, որ 63ին ստեղծուած էր իբրեւ խարիսխ կասպեան ձեռնարկին, իր վերջին հրամանատարութեան մէջ էր: Մինչեւ անգամ այնպէս կը թուի, թէ նոյն միջոցին նա Պոնտոսի եւ Գաղատիայի պատուիրակն եղած ըլլայ: Վասն զի Տակիտոսի եւ Յովսեփոսի միաձայն վկայութեան համաձայն[3] Կապպադովկիան՝ Կորբուղոնի նահանգը 66էն 69 տարիներուն կը գտնուէր առանց լեգէոններու պատուիրակի մը ձեռքը, զոր չենք կրնար նոյնացնել Կորբուղոնի հետ: Բացայայտ է թէ զինուորական պատրաստութիւններու վարիչը դժուարաւ կրնար ունենալ իր կայքը նահանգի մը մէջ, որ թափուր էր զօրաբանակներէ:

Կորբուղոն հակառակ իր պաշտօնին ան-

[3] Տակ. Պատմ. Բ, 81. Հր. Պատեր. Գ, 308:

միջական շրջանակին մէջ առեղի ունեցած փոփոխութեան, մինչեւ 66ի աշունը պատասխանատու խնամածուն էր հայ ստատական պետութեան հետ յարաբերութիւններուն։ Թէ Գ. Գաղղիականը 64ի ամառը իր հակադաթեամբ Ծոփքի բերդը շինած ըլլայ (Գլ. Ա, յօդ. 3) չեմ ուզեր պնդել, վասն զի այս կրնայ անոր տեղափոխումէն ետքն ալ կատարուած ըլլալ։ Բայց նոյն տարին Կորբուլոնի դեսպանի փեսան Աննիոս Վինիկիանոս Տրդատի կ'ընկերակցի, ընական է իր անձով հրամանաւ, դէպի Հռոմ եւ հոն կայսեր կողմանէ, հակառակ անոր, որ դեռ ծերակոյտի անդամ չէր, մեծապէս կը պատուուի (Դիոն. ԿԲ, 23)։ Իսկ երբ Տրդատ 66ի աշնան յունական արուեստագէտներու ստուար խումբ մը Արտաշատի վերաշինութեան համար հետը կը բերէ, դարձեալ Կորբուլոն է, որ համաձայնէ անցքին ատաղձուին ծախքերուն չափ կը դնէ (Դիոն. ԿԳ, 6, 6)։

Սակայն հայ ստատական պետութեան վրայ հակադութիւնը, զոր Կորբուլոն մինչեւ իր յետակոչումը գործադրած է, կրնայ նաեւ պետական նահանգին իշխանութեան ծիրին մէջ նկատուիլ, քանի որ Հռոմէական անոր հետ երկար սահմանակցութիւն մը ունէր։ Արտակարգ վերին հրամանատարութեան անուղութեան հարցին համար որոշիչ են Կորբուլոնի յարաբերութիւններն Ասորիքի պատուիրակին՝ Կեստոս Գաղղոսի հետ, որ 63ին

անոր տարակարգեալ զօրավարն եղած էր եւ յետոյ անոր հետ միաժամանակ եւ կանչուեցաւ։ Առանց ծանրանալու Գաղղոսի հրէական դժբախտ արշաւին պատմական նշանակութեան վրայ, հոս մատնանիշ կ'ընենք միայն, որ կայսրն անհամեմատ ծանր պարտութեան յանցանքը պատասխանատու զօրավարներուն վերագրեց եւ անոնց եւ կոչուելուն որոշումը տուաւ։

Սակայն ոչ միայն Գաղղոս, այլ նաեւ Կորբուլոն 66—67ի ձմրան եւ կանչուեցաւ եւ Յունաստան ցամաք ելած պահուն բռնադատուեցաւ անձնասպան ըլլալու[1]։ Կորբուլոն իբրեւ արեւելեան բանակին վերին հրամանատարը եւ Ասորիքի պատուիրակին պետը՝ պատասխանատու համարուեցաւ զրուման բանակին անբաւական թուոյն համար։

Վերջապէս՝ ասիական վերին հրամանատարութեան պաշտպանման համար կայ նաեւ ընդհանուր քաղաքագիտական պատճառ մը։ Ստոյգ է, պարթեւական խաղաղութիւնը 63ին եւ 64ին հաստատուած էր, սակայն դաշինքը դեռ չէր վաւերացուած, արեւելեան տուսարաթիւ բանակին միասնական վերին հրամանատարութիւնը դեռ այնչափ ժամանակ պէտք էր տեւել, մինչեւ որ Տրդատ դէպի Հռոմ պայմանեալ ուղեւորութիւնն սկսէր եւ այն-

[1] Դիոն. ՀԳ. 17, 5. Տակ. Պատմ. Դ, 6։

պէս դաշինքի կատարման իբրական կամք մը ցուցնէր ։ Ուրեմն թէ՛ Կորբուլոնի ընդհանուր կուսակալութիւնը եւ թէ՛ բանակին երկու դանուբեան լեգէոններով ուժեղացումը, մինչեւ 66ին գարունը պահուած ըլլալու են ։ Ուստի Կորբուլոն մինչեւ իր յետակոչումն, իբրեւ պատուիրակ Պոնտոսի եւ Գաղատիոյ, արեւելեան ստուարացած բանակին հրամանատարն էր ։ Իբրեւ այսպիսի՝ ոչ միայն պարթեւ եւ հայ սահմաններուն ապահովութեան, այլ նաեւ արդուանեան պատերազմին պատրաստութեան վրայ կը հսկէր ։

Արեւելքի մէջ Կորբուլոնի իշխանութեան տակ կը գտնուէին 67ին երկու դանուբեան լեգէոնները․ երբ նոյն տարւոյն սկիզբը Վեսպասիանոս Հրէից դէմ վերին հրամանատարութիւնը ստանձնեց Ե Մակեդոնականը եւ ԺԵ Ապողինարեանն, ինչպէս գրուած է Մոմզէն (Հռ․ Պ․ Ե, 533), դեռ իրենց հայրենի նահանգները չէին վերադարձած, ասոր լաւագոյն ապացոյցը կու տայ Յովսեփոսի լեգէոններու տախտակը [5] ։ Այսպէս ուրեմն Կորբուլոն մինչեւ Տրդատի Հռոմ հասնիլը դեռ ձեռքին տակ ունէր այն եօթը լեգէոնները, որոնք իրեն յանձնուած էին պարթեւական մարտին համար ։ Բայց որովհետեւ Յովսեփոս դժբախտաբար այս եօթը լեգէոններու

[5] Հր․ Պատեր․ Բ, 386 յջ․ Հմմտ․ ու այս Դոմաշեւսկի Kh. Mus. 47, 207 յջ․ եւ Վէբէր Josephus und Vespasian, 1921 ։

տափական նահանգներու մէջ ո՛ւր զետեղուած ըլլալն անյիշատակ կը թողու, տափուած էնք անդրադարձն աղբիւրներու հիման վրայ ստուգել անոնց բանակավայրերը:

Հայ սահմանին վրայ հաստատուած բանակաբաժինը 63ին կը բաղկանար չորս ընտիր լեգէոններէ՝ Գ Գաղղիական, Ե Մակեդոնական, Զ Երկաթապատ եւ ԺԵ Ապոլլինարեան, մինչդեռ Կեստոս Գաղղոսի Ասորիքի զօրամասը կը կազմէին հետեւեալ երեք լեգէոնները՝ Դ Սկիւթական, Ժ Փրետենեան եւ ԺԲ Շանթահար: Քիչ ետքն եղած փոփոխութիւններուն կը ծանօթանանք Յովսեփոսի Կեստոսի բանակին վրայ տուած տեղեկութիւններէն, երբ այս զօրաբաժինը 66ին Երուսաղէմ մեկնած է պատմական արշաւի մը համար: Այդ արշաւին մասնակցած է բացի ԺԲ Շանթահարէն նաեւ Զ Երկաթապատը իր օժանդակներով (Հր. Պատեր. Բ, 500, 544): Ուրեմն այս ընտիր լեգէոնը միջնամամանակին Կեստոսի խումբին անցած է. այս երկու լեգէոններէն զատ ու—լիարժէք Դ Սկիւթականն ալ Ասորիքի պաշտօնական զօրաբաժնին մէջ հաշուելու է: Իսկ Ժ Փրետենեանն այդ միջոցին Մելիտինէի մէջ Հայաստանի սահմանապահն էր (Հր. Պատեր. Է, 17). Թէ ո՛րքան ալ Կեստոսի հրամանատարութեան շրջանին մէջ էր, կը մնայ ստուգելի:

Պարթեւական խաղաղութեան կնքումին

յաջորդող տարիներու մէջ հայ սահմանին վրայ ամրութիւններու գիծ մը կառուցուած է. Տակիտոս (Պատմ. Բ, 6) կը յիշէ հոն գետեղուած զունդերն այն բանակաբաժիններու մէջ, որոնք 69ի կիսուն Վեսպասիանոսի գահակալութեան նպաստած են։ Ստորին Արածանւոյ վրայ շինուած բերդին կառուցման 64ին մասնակցած է Գ. Գաղղիականը։ Կայեանը, ուսկից այս յառաջամուխ դիրքը շինուած եւ պահուած է, անշուշտ Մելիտինէի բանակեալն էր, Արածանւոյ եւ Եփրատի գետախառնուրդի դէմը, ուր 62ին Կորբուլոն իր բանակը զումարած էր եւ ուր 66ին Ժ. Փրետենեանը, իսկ 70էն առջին ԺԲ. Շանթահարը տեւականապէս հաստատուած էր (Հր. Պատեր. է, 17, 18)։

Ուրեմն 64ին եւ 66ին Զ. Երկաթապատ փոխանորդելով Ժ. Փրետենեանն անցած է Ասորիք, իսկ վերջինս իր կարգին Մելիտինէի մէջ Գ. Գաղղիականին տեղը բռնած եւ զայն ուրիշ նպատակներու համար ազատ ըրած է։ Յայտնի կ'երեւայ, որ Գ. Գաղղիականը նոր ձեռնարկի մը համար երկու իլլիրական լեգէոններու հետ Փոքր Ասիոյ մէջ տեղ մը պատրաստ պահուած է։

Թէ այս բանակամասը ո՛ր նահանգին մէջ հաստատուած էր կը գուշակուի արդէն ըսուածներէն. իր կայեանը կրնայ ըլլալ միայն Պոնտոս եւ Գաղատիա նահանգը, որ ինչպէս տեսանք, ազուանեան արշաւին մեկ-

նախկէան ըլլալու սահմանուած էր։ Իբրեւ կուսակալ այդ նահանգին, Կորրուզան նոր արշաւին պատրաստութիւնները տեսած էր, անոր համար ալ հոն համախմբած է պատերազմիկ զօրք եւ մարտական կազմով օժտած։

Ռազմական ծանրակէտին դէպի հիւսիս այս տեղափոխութեան հետ անշուշտ կապ ունի ասորական լեգէոններու հրամանատարութեան մէջ տեղի ունեցած փոփոխութիւնը։ Ասորիքի բանակը չորրորդ լեգէոնով մը զօրացուած է, որ Մելիտինէի քով Տիգրանակերտ եւ Արտաշատ առնող ճամբուն վրայ կը հսկէր։ Եթէ այդ լեգէոնը ստորակարգուած չէր Կապադովկիոյ պատուիրակին, որ Յովսեփոսի եւ Տակիտոսի վկայութիւններու համաձայն զինուորական հրամանատարութիւն չունէր, այն ատեն հաւանական է, որ Ասորիքի պատուիրակին իշխանութեան տակ ըլլար, որով վերջինս մարտագօրին հիւսիս եւ արեւելք տեղափոխութեան ժամանակ սահմանապահութեան համար երկու բնիկ լեգէոն իսկ տակտիկական նպատակներու համար երկու ոչ-լիարժէք լեգէոն ընդունած է։ Արդ պիտի տեսնենք թէ Տրդատի մեկնումէն ետքը՝ վերջին Հրամանատարութիւնն իր ձեռքը միացած երեք բնիկ լեգէոններու վրայ ինչպէս տրամադրած է։

## 2. Պատերազմի պատրաստութիւնները 66 տարւոյն:

*Մեր առաջնորդը պիտի ըլլան դարձեալ Յովսեփոսի հրէական պատերազմին առթիւ գունդերու շարժումներու վրայ տուած տեղեկութիւնները: Վեսպասիանոս 67ի գարնան Փոքր Ասիայէն պատերազմի վայրը մեկնելով Ե Մակեդոնական եւ Ժ Փրետենսեան Անտիոքի վրայէն Պտղոմայիս, իր գործողութեան խարիսխը կը կոչէ (Հր. Պատեր. Գ, 29, 65): Այս լեգէոններէն մին Պոնտոս հաստատուած արշաւազօրին կը պատկանէր, մինչ միւսը Մելիտինէի մէջ սահմանապահ նշանակուած էր: Ասոր տեղն անցած է հաւանաբար դարձեալ Գ Գաղղիական, որ այնուհետեւ Լիկինիոս Մուկիանոսի առաջական սահմանապահ գունդին մէջ կը յիշուի (Տակ. Պատմ. Բ, 4): Այս տեղափոխութիւններէն կը հետեւի Գ Գաղղիականի եւ Ե Մակեդոնականի կայեանի մասին մեր ապացոյցներուն ճշդութիւնը: Այս երկու լեգէոններէն որոշակի կ'անջատէ Յովսեփոս ԺԵ Ապոլինարեանը, զոր Վեսպասիանոսի որդին՝ Տիտոս բացայայտ չնշանակուած Աղեքսանդրիայի մը մէջ կը առանձնէ եւ ցամաքէն ճեպով Պտղոմայիս կը հասցնէ: Հակառակ Մոմզէնի եւ Վերերի[6], որոնք այդ անուամբ Կիլիկիոյ*

---

[6] Հռ. Պատմ. Ե, 533. Վերեր, 114 յջ.:

Աղեքսանդրիան կ՚ուզեն մատնանշուած անա-նել, բաւական համոզիչ պատճառներ ունին, ընդունելու թէ խօսքն Եգիպտոսի մայրաքա-ղաքին վրայ է ։ Ուրեմն ժԵ Աղոգինարեանը 66ի աշնան յայտնապէս Եգիպտոս անցած է, եթովպիական արշաւին սահմանուած գուն-դերուն կորիզն կազմելու ։

Այսպէս ապստամբեան պատերազմին հա-մար արեւելեան բանակէն միայն երկու լէ-գէոն տրամադրելի կը մնար, այսինքն Գ Գաղ-ղիական եւ Ե Մակեդոնական, որոնք Կոր-բուղոն իր Պոնտոս եւ Գաղատիա նահանգին մէջ պատրաստի կը պահէր․ այս գունդերը սակայն անբաւական էին ապստամբեան դժուա-րամատոյց երկրին մէջ՝ այն պատերազմին ժողովրդեան դէմ, արագ եւ ապահով յաջո-ղութիւն մը երաշխաւորելու, առ նուազն եր-րորդ լեգէոն մը այդ արշաւին համար պէտք էր ։

Բայց որովհետեւ խոհեմական չէր պե-տութեան արեւմուտքը եւ հարաւը լեգէոն-ներէ բոլորովին մերկացնել, իբրեւ միակ ելք կը մնար այդ նպատակի համար նոր լեգէոնի մը կազմութիւնը ։ Ուստի կայսրը 66ի ամառը Յունաստան մեկնելէ առաջ հրաման արձա-կեց նոր լեգէոն մը զօրակոչելու, որ վեց ոտք բարձրութեամբ իտալացիներէ պէտք էր կազմուիլ (Սուետ. Ներոն, 13) ։ Նոր գունդը, որ դէպի Կասպեան դռները իրեն պիտի ըն-կերանար, Աղեքսանդր Մեծի փաղանգ ա-

նուաճել, բայց երբ 68ի գարնան այդ լեգէոնին յանձնուեցաւ իր արծուէնշանը եւ Կալպայի դէմ տարուեցաւ՝ Ա. Իտալական պաշտօնական անունը ստացաւ:

Հիմայ ի վիճակի ենք 66ի այս վճռական տարւոյն, զինուորական իրադարձութիւններու մասին որոշ խօսք մը ըսել: Կն. Դոմիտիոս Կորբուղոն, արեւելեան խնդիրներու փորձ վարիչը եւ անոր բազմարդիւն սպարապետը Տի. Յուլիոս Աղեքսանդր՝ կայսեր ներկայութեան, ինչպէս կը վկայեն մեր աղբիւրները առ Հասարակ [7], առաջնորդ պիտի ըլլային երկու մեծ արշաւներուն, մին՝ դէպի վերին Նեղոս, իսկ միւսը դէպի Կասպից ծովը:

Կորբուղոնի բանակը մեծաց բաժնուած երկուքի, պատմական արշաւախումբի մը եւ Աւարիքի կուսակալին տակ գրաւման զօրաբանակի մը, որու մէջն էր միանգամայն Մելիտինէի առհամանապահ լեգէոնը: Գ. Գալլիականին եւ Ե. Մակեդոնականին վրայ պիտի աւելնար նորակոչ Ա. Իտալականը: Բայց որովհետեւ վերջինս ամենամեծ արագութեամբ մը պարագային իսկ, հազիւ թէ 67ի աշնան Պոնտոս կարենար հասնիլ, հետեւաբար պատուական արշաւին հնարաւոր չէր ձեռնարկել 68ի գարնանէն առաջ:

Այսպէս 66ի աշնան հասած էր վայր-

---

[7] Տակ. Տ. ԺԸ, 36. Դամ. Ա, 6. Պլին. Զ, 40:

կեանը, որ կայսրն իր երկար ժամանակէ ի վեր ծրագրած ուղեւորութիւնը դէպի արեւելք սկսէր։ Արդէն 66ի գարնան անգամ մը կայսր եւ պատրաստ էր Ներոն ճամբայ ելլելու, սակայն վերջին պահուն ետ կեցած է անկէ։ Այս յետաձգման մէջ քաղաքական պատճառ մը կ'ուզեմ տեսնել, այսպէս Տրդատի ժամէ ժամ սպասուած ժամանումը ի Հռոմ հպատակութեան ցոյցի։ Տրդատի հպատակութեան արտայայտումէն անմիջապէս ետքը՝ կայսրն իր ուղեւորութեան ծրագիրները վերստին ձեռք առած է։ Անկէ քիչ ետքը՝ Ախայի մէջ գտնուած միջոցին համար, Պարթեւներու արքային հետ տեսակցութեան մը համար ժամադրուած է (Դիոն. ՀԳ, 7, 2). նոյնպէս Աղեքսանդր Մեծի փաղանգին կազմութեան հրամանը հանած եւ զայն անձամբ դէպի Կասպեան դռներն առաջնորդելու իր դիտումը յայտնած. բացորոշ էր թէ արեւելք կը մեկնէր պատերազմ մղելու։

Յամենայն դէպս կայսրը 66ի սեպտեմբերին վերջերն արեւելք մեկնած է։ Իր բացակայութեան՝ պետութեան գործերու վարչութիւնը յանձնեց Հելիոս ազատեալին, որ աւանդ առած իշխանութեան հաւատարիմ եւ խոհեմ վարիչ մը հանդիսացաւ (Հերտցբերգըն, Ներոն, 382)։

Կայսրը կը ճամբորդէր ուղեկիցներու մեծ

խումբով մը, որու մէջն էին, ուրիշ հիւպատոսներու հետ, նաեւ յայտնի արքունական եւ պատմագիր Կլաւիոս Ռուփոս եւ Վեսպասիանոս, որ վերջէն կայսրութեան գահը բարձրացաւ։ Ուղեկիցներու մէջն էր նոյնպէս թիկնապահներու պետը՝ Ոփոնիոս Տիգեղղինոս 6000 պրետորականներով *։ Առաջին անգամն էր, որ պրետորականներու այսպիսի բազմութիւն մը Իտալիայէն դուրս կայսեր կ'ուղեկցէր, թիկնապահներու պետին առաջնորդութեամբ պատերազմի մասնակցելու համար։

Պրետորական լեգէոնն անշուշտ նախատեսուած էր, ԺԵ Ապողինարեանի հետ եթովպական արշաւին զօրաբաժինը կազմելու եւ այս Իտալականին, Գ Գաղղիականին եւ Ե Մակեդոնականին միացած՝ Աղուանից երկիրը գրաւելու։ Թիկնապահ գունդին վրայ եղած այս կարգադրութիւնը նշան է այն ազդեցութեան, զոր ունեցած է Տիգիղղինոս վերջին արեւելեան պատերազմին պատրաստութիւններու վրայ։ Իրաց ընթացքն այսպէս կրնայ մտածուիլ, Կորբուղոն եւ Աղեքսանդր կարիքը մատնանշած են, իսկ Տիգիղղինոս անոր գոհացման կերպը կարգադրած եւ անոր վրայ հակած է։

* Դիոն. ԿԲ, 12. 3. 13. 1. Սուետ. Ներ. 25։
40. Դիոն. ԿԳ, 8. 1. Սուետ. Ներ. 19։

### 3. Պատերազմի պատրաստութիւնները 67 տարւոյն:

*Այն ինչ արեւելեան արշաւին պատրաստութիւններն աւարտելու վրայ էին, Գաղղոսի դէպի Հրէաստան ձեռնարկած արշաւին անյաջողութեան գոյժը հասաւ կայսեր ականջը 67ին Յունուարի մէջ: Կեստոս Գաղղոս 66ի աշնան ԺԲ Շանթահարի եւ միւս լեգէոններէն 2000 անձի գլուխ անցած խռովեալ նահանգը մտած (Հր. Պատեր. Բ, 500), եւ երկիրն առանց մեծ յաղթութեան գրաւած էր, սակայն սաստկապէս ամրացած մայրաքաղաքը՝ Երուսաղէմը, չէր կրցած առնուլ, մանաւանդ թէ ստիպուած էր մեծ կորուստով ետ քաշուիլ եւ ամբողջ աղխն ու կազմածը թշնամւոյն թողուլ (Անդ, Բ, 540): Ամօթալից պարտութիւն մըն էր այս. թէեւ սահմանակից երկիրներու մէջ հռոմէական իշխանութիւնն ապահով էր դրացի ժողովուրդներու հակահրէական զգածումներուն եւ պատրաստուած զունդերուն պաշտպանողականի համար կատարելապէս բաւական ուժին պատճառաւ, սակայն եւ այնպէս այդ բուռ մը ժողովուրդն ընկճելու համար ամբողջ հիւպատոսական բանակ մը կը պահանջուէր: Եւ որովհետեւ արեւելքի այս խռովեալ միջոցին խոհեմական չէր Սիրիոյ սահմանապահ զօրաբանակն առաւել եւս տկարացնել, ուրեմն անհրաժեշտ զօրախումբերը կրնային միայն*

տոնուիլ արեւելեան նոր մարտին համար նա–խատահմանուած զօրաբանակէն ։ Գաղղոսի այս պարտութեամբ խնդրական դարձած կամ առ նուազն մեծապէս յետաձգուած էր արեւե–լեան ծրագիրներու գործադրութիւնը, որու համար կայսրն իր արեւելքի ուղեւորութեան ձեռնարկած էր ։

Միապետը, որ ատենի այս անդրադարձն հե–տեւանքներէն զգալապէս ազդուած էր քան թէ տեղական պարտութենէն, այն համոզումն ունէր, որ եթէ պատասխանատուներն պէտք եղած խնամքն ունեցած ըլլային այս անպա–տուաբեր արկածը խուսափելի էր (Հր. Պա–տեր. Գ, 1, 2) ։ Գաղղոս ետ կանչուեցաւ եւ կ'երեւայ թէ կամաւոր մահուամբ իւր զինքն կայսեր շնորհազրկումէն ազատած է (Տակ. Պատմ. Ե, 10) ։ Նաեւ Կորբուղոն, որ ան–շուշտ Ասորիքի պաշտպանողին համար թուա–կան նուազ պահանջ մը ներկայացուցած էր, արքունիք պատասխանատուութեան կոչուե–ցաւ ։ Վստահ պետութեան համար իր հնօրեայ արժանիքներուն վրայ՝ կոչին հետեւեցաւ, սակայն երբ 67ի գարնան Իսթմոս ցամաք ելաւ, անձնասպանութեան հրամանն ստա–ցաւ, որմէ չկրցաւ անձնապուրծ ըլլալ ։

Իբրեւ յաջորդ Կորբուղոնի Արեւելքի ընդհանուր կուսակալ նշանակուեցաւ Տ. Փլա–ւիոս Վեսպասիանոս, որ իր տրամադրու–թեան տակ ունէր դարձեալ եօթը լեգէոնեան բանակը ։ Անոր ալ օգնական տրուեցաւ՝ Մու–

ըերքի համար, պատուիրակ մը, որ անջատելով զօրամասով մը Եփրատի վրայ սահմաններու պաշտպանութեան, իսկ Ասորիքի մէջ կարգադրութեան հոգ պիտի տանէր։ Ուրեմն 62 տարւոյն դրութիւնը Կորբուլոնի անկումէն ետքն ալ կանգուն մնացած է։

Նոր հրամանատարը հրէական պատերազմին համար նշանակեց Ե Մակեդոնականը՝ պոնտական բանակէն, եւ Ժ Փրետենեանը հայկական սահմանագլխէն, վերջնոյս տեղ Պոնտոսէն Մելիտինէ զրկուեցաւ Գ Գաղղիականը։ Հրէական պատերազմին համար նոյնպէս բերել տուաւ Եգիպտոսէն իր որդւոյն առաջնորդութեամբ ԺԵ Ապողինարեանը։ Մնացած չորս լեգէոնները Մուկիանոսի զօրախումբը կը կազմէին. ասոնց մէջէն Գ Գաղղիականը եւ Զ Երկաթապատն Եփրատի վրայ կը հսկէին, իսկ Դ Սկիւթականը եւ ԺԲ Շանթահարն Ասորիքի խաղաղութիւնն կ'ապահովէին։ Այս նոր կարգադրութեամբ, աղուանեան արշաւին համար պատրաստի պահուած երկու լեգէոնները եւ եթովպական արշաւախումբին ընտրելագոյն լեգէոնը, կը հեռացուէին իրենց համար նախասահմանուած նպատակէն։

Բայց կայսրը, որ իբրեւ նոր մի Աղեքսանդրը, արեւելքը նուաճելու եկած էր, չէր կրնար Հռոմ վերադառնալ, առանց արեւելեան պատերազմին իրապէս ընելու։ Կայսերական վարկը կը պահանջէր ամէն գնով դէպի

Սուտան եւ դէպի Կասպեան գօտերն արշաւ–ներն տարահօսել: Եթէ արեւելքի մէջ անյա–տալիօրէն երեք լեգէոն բանուած էր, ուրեմն Արեւմուտքը պէտք էր երեք ուրիշ լեգէոն տալ, երկար ատենէ ի վեր ծրագրուած ա–րեւելեան մարտին համար: Սակայն ոչ հռո–մէական բանակը՝ իր եօթը լեգէոններով եւ ոչ գաղութեան բանակն իր միայն հինգ լե–գէոններով կրնային ամբողջական գունդեր տրամադրել: Միայն Բրիտանիան ի հարկին կրնար իւր չորս լեգէոններէն մին տալ, ուստի 67ի գարնան՝ Բրիտանիայի լաւագոյն լեգէոնը ԺԴ Արեւեան Յաղթականը հրաման ստացաւ արեւելք մեկնելու: Պակաս միւս երկու լե–գէոններու փոխարէն առնուեցան Եւրոպայի երեք մեծ բանակներու պահեստի գունդերն, որոնք մասամբ արդէն 67ի աշնան իրենց հա–մար նախատեսուած վայրերն հասան. Գեր–մանական խումբերն եթովպական արշաւին որոշուած էին, իսկ մնացածներն աղուանեան պատերազմին պիտի մասնակցէին:

Պահեստի գունդերու նախասահմանումէն կրնանք հետեւցնել նաեւ անոնց թուական ոյժը: Աւանդութեան համաձայն պահեստի գունդերը սովորաբար կը կազմուէին իւրա–քանչիւր լեգէոնէն 1000 անձի մասնակցու–թեամբ: Ուրեմն մեր դէպքին եօթը գերմա–նական լեգէոններէն 7000 անձ ԺԵ Ապոլի–նարեանի հետ կ'անցնէին, մինչ միւս ութը լե–

դէոններէն 8000 հոգի կը սահմանուին կով-կասեան արշաւին համար։

Այսուամենայն արշաւին համար սահմանուած նոր բանակը 68ի գարնան դեռ Դալմատիա կը գտնուէր, ասկէ կրնար պետական բանակներուն հասնիլ մինչեւ 68ի աշունը, որպէս զի յառաջիկայ գարնան յարձակողականին պատրաստ ըլլար։

Սակայն 67ի վերջերը կամ 68ի սկիզբը կովկասեան ձեռնարկին պատրաստութեան համար դեռ վերջին վայրափոխութիւն մը սկզբի ունեցած է։ Ներոնի օրհասին Գ. Գաղղիականը, զոր Վեսպասիանոս 67ի սկիզբը Մեզիայէն փոխադրած էր Հայաստանի սահմանին պահպանութեան՝ մնացած է մէջտեղէկան բանակարաններն։ Երբ հրէական դժուարութիւնները ժամանակ արշակունիներու բռնած օրինապահ դիրքը տեսնուեցաւ, կարելի եղաւ Եփրատի սահմանէն բանակը քաղէն մը անխափան հեռացնել եւ փոխադրել Սուրիոյ Դանուբի երկիրներն, ուր Սարմատներու յարուցած նոր խռովութիւններու պատճառաւ նա շատ աւելի անհրաժեշտ էր։

Ասով իր լրումն կ՚առնու Ներոնի վերջին տարուայն զօրամասերու վայրափոխութեան ծիրը։

*

Ներոնի անկման միջոցին արեւելքի մէջ — Եգիպտոս, Հրէաստան, Ասորիք եւ Պոնտոս — կը գտնուէին անցողակի կամ տեւա-

կառայէս 75·000 հետեւակ լեգէոնականներ, մինչ պետութեան եւրոպական սահմաններու վրայ, մէջն ըլլալով Ափրիկէ նահանգը, 93·000 հոգի կային: Զինուորական յարաբերութիւններու կատարեալ յեղաշրջում մը կը նշանակէ այս: Վասն զի 54ին արեւելեան նահանգներու մէջ հաստատուած էին միայն վեց լեգէոն՝ 36·000 անձ, իսկ քսանումէկ լեգէոն, ուրեմն 126·000 անձ, պետութեան միացեալ սահմանները կը պահէին: Այժմ արեւելեան բանակն աւելի քան կրկնապատկուած էր եւ ամբողջ բանակին գրեթէ կէսը կը ներփակէր, մինչ Ներոնի գահակալութեան սկիզբը պետութեան լեգէոններու միայն քառորդը կը կազմէր: Այս չոր ու ցամաք թիւերն ինքնին կը յայտնեն պետութեան արտաքին քաղաքականութեան հիմն ի վեր փոփոխումը, որ կրկին յեղաշրջուեցաւ Ներոնի գահազրկումով եւ անփառունակ մահուամբ, միաժամանակ հողաթափ ընելով անոր արեւելեան մեծ քաղաքականութիւնը: Վեսպասիանոս ստիպուեցաւ գահանալ նախընթաց վարչութեան հաստատուցած արեւելեան գործողութենէն հնարաւոր մեծագոյն օգուտը քաղելով: Հայաստանի աւատատուին հաստատութեան զինուորական ապահովութիւնը, որու համար կը ձգնէր Ներոն Աղուանից երկրին գրաւումով, Վեսպասիանոս՝ Կապադովկիա–Պոնտոս մեծ–նահանգին կազմութեամբ ուզեց երաշխաւորել - երկու լեգէոն, մին՝ Մե-

լինինէ եւ միւսն՝ Ծաստաղ բանակած, Հայաստանի հիւսիսային եւ արեւմտեան սահմաններուն վրայ կը հսկէին: Իսկ պարթեւ բարեկամութիւնն այնչափ միայն խնամուեցաւ, որչափ առանց մասնաւոր ջանքի հնարաւոր էր: Հետագային Պարթեւներն ընկճելու համար եղած փորձերն ապարդիւն անցան, վասն զի այն խմբաւորումը, որու վրայ բարձրացուցած էր Ներոն իր ծրագիրները, ընդ միշտ անհետացած էր. Վրկաններն այլ եւս Հռոմի դաշնակիցները չէին Պարթեւներու դէմ: Այսպէս պարթեւ պետութիւնը մնաց դրացի ու մրցակից Հռոմի, մինչեւ որ հզօրագոյն ցեղակից Սասանեան տէրութեան զոհ եղաւ:



# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ


Յովսեփոս, *Հնախօսութիւն Հրէից։*

— *Վասն Հրէական պատերազմին։*

Սուետոն, Claudius, Domitianus, Nero, Vespasianus.

Տակիտոս, *Տարեգիրք։*

— *Պատմութիւն։*

Chapot V., La frontière de l'Euphrate, 1908.

Egli A., Die Feldzüge in Armenien in den Jahren 41—63 (Untersuchungen zur Geschichte der römischen Kaiserzeit, hrsg. von M. Budinger, I, 1869, 265—364).

Gardthausen V., Augustus und seine Zeit, 1891—1904.

Gutschmid A. v., Geschichte Irans und seiner Nachbarländer, 1888.

Herrmann A., Die alten Seidenstraßen zwischen China und Syrien (Quellen und Forschungen zur alten Geschichte und Geographie, hrsg. von W. Sieglin, 21, 1910).

Herderson B. W., Controversies in armenian topography (Journal of Philology, 28, 1903) = H. J. Phil. 28.

— The life and principate of the emperor Nero, 1903, 1905 = Հ. Ներոն.

Klio XIX. W. Schur, Untersuchungen zur Geschichte der Orientfeldzüge Corbulos.

Kornemann E., Mausoleum und Tatenbericht des Augustus, 1921.

Lehmann-Haupt C. F., Armenien einst und jetzt, 1910.

Mommsen, Römische Geschichte. V.

Marquardt, Staatsverwaltung von Rom.

Pfitzner W., Geschichte der römischen Kaiserlegionen von Augustus bis auf Hadrianus, 1881.

Rawlinson G., The sixt great oriental empire or geography, history and antiquities of Parthia, 1873.

Ritterling, De legione X gemine Romana Diss. Berl., 1883.

Rostowzew M., Bithynia, Pontus and the Bosporus (Annual of the Brit. School at Athens XXII, 1916—1918).

— Studien zur Geschichte des römischen Kolonates, 1910.

Schiller H., Geschichte des römischen Kaiserreiches unter Nero.

Sievers G. R., Studien zur Geschichte der römischen Kaiserzeit, 1870.

Stein A., Domitius 50 (= Corbulo) ի բառարանի PWRE, յաւելուած III, 394 էջ.

Täubler E., Imperium romanum. Studien zur Entwicklungsgeschichte des römischen Reiches, I, 1913.

— Die Parthernachrichten des Josephos, Diss. Berl., 1905.

Wroth, Դրամագիտական ցուցակներ եւ ժամանակագրութիւն։

CIL = Corpus inscriptorum latinum.

GGM = Geograph. Gr. min.

PWRE = Pauly Wissowas Real encyclopedie.

ZDMG = Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



---

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., *Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Գիշոփ, Լեհահայոց հին իրաւունքը. 2. Գոլէր, Իրաւունք Հայոց*: 1890: էջք է + 85 + 59:
Ֆր. 1·50

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., *Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց*: 1890: էջ 50: Ֆր. 1—

Գ. Տաշեան Հ. Յ., *Ագաթանգեղոս առ Գէորգայ արաբի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց*: 1891: էջ ԺԱ + 159:
Ֆր. 1·50

Դ. Դան Դ., *Արեւելեան Հայք ի Պուքովինա*: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: էջ 79:
Ֆր. 1—

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի*: 1892: էջ Դ + 272: Ֆր. 3—

Զ. Տըվլէ Ա. եւ Գ. Փիսոն, *Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա*: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: էջ 82: Ֆր. 1—

Է. Մառ Ն., *Ամառնային ուղեւորութիւններից դէպ ի Հայս*: Թրգմ. Ո. Անտիկեան: 1892: էջ 89:
Ֆր. 1—

Ը. Կարրիէր Ա., *Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ*: Հտ. Ա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: էջ Ժ + 51: Ֆր. 1—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., *Պատմութիւն Հայ լրագրութեան*: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսատիպ պատկերով:) 1893: էջ 232: *Սպառած*:

Ժ. Կոնիբիր Փր. Կ., *Քննութիւնք գրոց Դաւթի կամ Թարգմանութեան Արիստոտէլի*: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: էջք է + 92:
Ֆր. 1·50

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթու-պոլիս Դրանսիլուանիոյ, Հտր. Ա. 1680—1779: (1 գունատիպ պատկերով:) 1893: Էջ Ժ + 523:
Ֆր. 5·50

ԺԲ. Խալաթեան Գր., Զենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Չ + 96:
Ֆր. 1·—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտ. 55 պատկ.:) 1894: Էջ Ը + 103: Ֆր. 2·50

ԺԴ. Կարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8°: Էջ ԺԱ + 43: Ֆր. 1·—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից Ա.՝ Հ. Հիւբշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Բրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւբշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ + 145:
Ֆր. 2·—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք. Հտր. Ա. Ա—Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Եսարոփիկ, Գիրք Հերմէսանոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ + 296: Ֆր. 3·50

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Գ. Զէթթէրի, ամփոփում եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ + 202: Ֆր. 2·50

ԺԸ. Տիրոեան Կ., Սեւ Ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 192: Ֆր. 2·—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլա Հայաքաղաքի: 1896: Էջ Թ + 352: Ֆր. 4·—

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., «Վարդապետութիւն առաքելոց» անվաւերական կանոնաց մատեանը: Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ + 442: Ֆր. 6·—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է + 62: Ֆր. 1·—

ԻԲ. Կարրիէր Ա., *Արդարու դրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ։ Թարգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան։* 1897։ *էջ ԺԶ* + 107։ *Ֆր.* 1·50

ԻԳ. Ցովնանեան Հ. Ղ. Վ., *Հետազօտութիւնք նախնեաց ոտանաւորներու վրայ։ Մասն Ա. Թաղկերգէն մատենագրութիւն։ Տետր Ա։* 1897։ *էջ Ը* + 272։ *Ֆր.* 4·—

ԻԴ. Ցովնանեան Հ. Ղ. Վ., *Հետազօտութիւնք նախնեաց ոտանաւորներու եւն։ Տետր Բ։* 1897։ *էջ Ը* + 273—522։ *Ֆր.* 3·—

ԻԵ. Գելցէր Հ., *Համառօտ Պատմութիւն Հայոց։ Թարգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան։ Յաւելուած* 1. *Ցանկ* 1895*էն*—1897 *Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու։* 2. *Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց։* 1897։ *էջ Ը* + 130։ *Ֆր.* 2·—

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., *Գիրք կամ՝ յօդուած գրելու արուեստը։ Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը։ Բ. տպ.* 1926։ *էջ Ը* + 168։ *Ֆր.* 2·—

ԻԷ. Խալաթեան Գր., *Մ. Խորենացւոյ նորագոյն աղբիւրներու մասին քննադատական ուսումնասիրութիւնք։* 1898։ *էջ Է* + 56։ *Ֆր.* 1·—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., *Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ։* (10 *գծագրական պատկերով։*) 1898։ *էջ ԺԱ* + 202։ *Ֆր.* 2·50

ԻԹ. Խաղբաշեան Յ., *Փ. Բիւզանդացին եւ իր պատմութեան խորդախոյզը։ Խորենացւոյ աղբիւրներու ուսումնասիրութիւն։* 1898։ *էջ Թ* + 175։ *Ֆր.* 2·50

Լ. Մսերեանց Լ., *Հայերէն բարբառախօսութիւն։ Թարգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան։* 1899։ *էջ Է* + 26։ *Ֆր.* —·50

ԼԱ. Թոսեան Հ. Յ. Վ., *Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս։ Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք։* (53 *գծագր. պատկերով։*) 1899։ *էջ ԺԲ* + 369։ *Ֆր.* 5·—

ԼԲ. Թոսեան Հ. Յ. Վ., *Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս։ Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքները եւ Հայք։* (15 *պատկերով։*) 1899։ *էջ Ժ* + 161։ *Ֆր.* 2·50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., *Հայք յԵղիսաբեթուպոլիս Տրանսիլուանիոյ. Հատ. Բ.* 1780—1825։ 1899։ *էջ Է* + 558։ *Ֆր.* 6·—

ԼԴ․ Գազանճեան Յ․, Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը։ 1899։ էջ Է + 124։ Ֆր․ 1·50

ԼԵ․ Կարրիէր Ա․, Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ․ Խորենացւոյ համեմատ։ Թարգմ․ Հ․ Յ․ Վ․ Տաշեան (1 աշխարհագրական տախտակով։) 1899։ էջ 48։ Ֆր․ 1·—

ԼԶ․ Տաշեան Հ․ Յ․ Վ․, Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն․ Մառի․ տեղեկագրութիւն եւ քաղուածքներ։ 1900։ էջ ԺԱ + 198։ Ֆր․ 2·50

ԼԷ․ Տաշեան Հ․ Յ․ Վ․, Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք (տես ԺԶ)։ Հատոր Բ․ Է—Ժ․ Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագաթանգեղոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս՝ հանդերձ հրատարակութեամբ, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք։ 1901։ էջ ԺԲ + 388։ Ֆր․ 4·50

ԼԸ․ Տէր-Պօղոսեան Գր․, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ․ Մաս Ա․։ 1901։ էջ Ը + 110։ Ֆր․ 1·50

ԼԹ․ Վէբէր Ս․, Արարատը Ս․ Գրոց մէջ։ Թարգմ․ Հ․ Բ․ Պիլէզիկճեան։ 1901։ էջ Ե + 77։ Ֆր․ 1·—

Խ․ Սանտալճեան Յովսէփ Վ․, Ասորեստանեայ եւ Պարսից սեպագիր արձանագրութիւնք։ 1901։ էջ 262։ Ֆր․ 4·—

ԽԱ․ Խալաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական գիւցազնական վէպը։ 1903։ էջ Ը + 72։ Ֆր․ 1·—

ԽԲ․ Մէնէվիշեան Հ․ Գ․ Վ․, Արդի լեզուագիտութիւնը։ Հատ․ Ա․ 1903։ էջ Ը + 204։ Ֆր․ 3·—

ԽԳ․ Մարկուարտ Յ․, Հայ Բդեաշխք։ Թարգմ՝ Հ․ Թ․ Կէտիկեան։ 1903։ էջ 44։ Ֆր․ —·50

ԽԴ․ Գելցէր Հ․, Աշխարհաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու գրութեան (1 աշխարհացուցով)։ Թարգմ․ Հ․ Գ․ Գարանֆիլեան։ 1903։ էջ Է + 83։ Ֆր․ 2·—

ԽԵ․ Կիւլէսէրեան Բ․ Վ․, Ծովք, Ծովք-Տղուք եւ Համամ-Կիւղ։ (1 աշխարհացուցով։) 1904։ էջ Ը + 124։ Ֆր․ 2·—

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք։ 1904։ էջ ԺԴ + 227։ Ֆր. 3·50

ԽԷ. Պէտէրմանն Հ., Նպաստ մը հայ դիցուց պատմութեան։ Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան։ 1904։ էջ Ը + 87։ Ֆր. 1·—

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Ց., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին։ 1904։ էջ Է + 110։ Ֆր. 1·50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթու-պոլիս Տրանսիլուանիոյ. Հատ. Գ. 1825—1904։ էջ Ժ + 666։ Ֆր. 7·—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդստան եւ արեւմտեան Պարսկաստան, բարեխառն-ասորեստանեայ աշխարհը. Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան։ 1904։ էջ Է + 222։ Ֆր. 3·—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովսէս Խորենացւոյ։ Թրգմ. Արսէն Մ. Սիմոնեանց։ 1904։ էջ + 124։ Ֆր. 1·50

ԾԲ. Պէտէրմանն Հ., Հայերէն եւ դրացի լեզուներ։ Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկեան։ 1907։ էջ ԺԱ + 264։ Ֆր. 5·—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները։ Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան։ 1907։ էջ ԺԶ + 443։ Ֆր. 7·—

ԾԴ. Պէտէրմանն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները։ Թրգմ. Հ. Յ. Տաշեան։ 1907։ էջ Է + 90։ Ֆր. 2·—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Մարգար Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք (1720—1775)։ 1908։ էջ ԺԴ + 433։ Ֆր. 6·50

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ։ 1908։ էջ 38։ Ֆր. —·50

ԾԷ. Կիւլէսէրեան Ռ. Մ. Վ., Եղիշէ. քննական ուսումնասիրութիւն։ 1909։ էջ ԽԸ + 461։ Ֆր. 7·—

ԾԸ.¹ Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ։ էջ Ը + 60։

ԾԸ.² Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ։ 1909։ էջ 61—106։ Ֆր. 1·50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր առակները։ 1910։ էջ ԺԲ + 87։ Ֆր. 1·—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն կաթողիկոս Վրաց։ 1910։ էջ ԽԵ + 315։ Ֆր. 5·—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ն. Վ., *Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը*։ 1910։ էջ 73։ Գր. 1.—

ԿԲ. Գիւտերբոք Կ., *Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանոս ժամանակ*։ Թրգմ. Հ. Հ. Համբարեան։ 1911։ էջ Ը + 162։ Գր. 2·50

ԿԳ. Սամուէլեան Խ., *Մխիթար Գոշի Դատաստանագիրքը ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը*։ 1911։ էջ ԺԲ + 344։ Գր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., *Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան*։ Մաս Ա. 1911։ էջ Ը + 97։ Գր. 1·50

ԿԵ.¹ Յովսէփեան Հ. Ղ. Վ., *Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն*։ էջ Ը + 1—48։

ԿԵ.² Ակինեան Հ. Ն., *Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթաններ եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք*։ 1911։ էջ 49—117։ Գր. 1·50

ԿԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Ն. Վ., *Գրիգորի Մագիստրոսի «Քերականին» ամբողջական լուծումը*։ 1912։ էջ ԺԱ + 162։ Գր. 2·—

ԿԷ. Քարքիէլեան Դկտ. Մ. Ա., *Ակնայ Գաւառաբարբառը եւ արդի Հայերէն լեզուն*։ 1912։ էջ Է + 416։ Գր. 6·—

ԿԸ. Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., *Պատմութիւն հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի*։ Թրգմ. Հ. Ա. Վարդանեան։ 1913։ էջ Է + 59։ Գր. 1·—

ԿԹ. Աճառեան Հ., *Հայոց գրերը*։ 1913—1927։ 8°։ էջ 504։ Գր. 7·—

Հ. Մատիկեան Հ. Ա., *Անանուն կամ կեղծ-Սեբէոս, քննական ուսումնասիրութիւն*։ 1913։ էջ Է + 91։ Գր. 1·50

ՀԱ. Թորգոմեան Տ. Վ. Յ., *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպոլոյ Պատմութիւն*։ Հատոր Ա. 1913։ էջ ԼԵ + 412։ Գր. 6.—

ՀԲ. Վարդանեան Հ. Ա., *Դասական մանր բնագիրներ եւ ձեռագրական համեմատութիւններ*, Ա., 1913։ էջ Ը + 155։ Գր. 2·—

ՀԳ.¹ Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., *Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը ծանօթութիւններով*։ Թրգմ. Հ. Մ. Հապոզեան։ 1913։ էջ 68։

ՀԳ.² Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., *Վրական Բա-*

գրատուներուն ծագումը։ Թրգմ. Հ. Մ. Հապոզեան։ 1913։ էջ 69—150։ Գր. 2·—

ԺԴ. Վարդանեան Հ. Ա., Բառաքննական դիտողութիւններ, Ա։ 1913։ էջ 120։ Գր. 1·50

ԺԵ. Գիւտերբոք Կ., Հռովմէական Հայաստան եւ Հռովմէական սատրապութիւնները Դ—Զ դարերուն։ Թրգմ. Հ. Մկրտիչ Վ. Նորշունեան։ 1914։ էջ Է + 94։ Գր. 1·50

ԺԶ. Վարդանեան Հ. Ա., Բառաքննական դիտողութիւններ, Բ։ 1914։ էջ 110։ Գր. 1·50

ԺԷ. Սրապեան Հ. Ս., Ս. Յակոբ ազգային հիւանդանոց։ 1915։ էջ ԻԴ + 477։ Գր. 6·50

ԺԸ. Պալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն եպիսկոպոսներու եւ ժամանակին հայ կաթուղիկեայց։ 1915։ էջ Ը + 384։ Գր. 4·50

ԺԹ. Խաչիկ-Բէկ Մ. Ս., Արաբկիրի գաւառաբարբառը։ 1919։ էջ ԺԱ + 292։ Գր. 4·—

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., Արշակունի դրամներ, Ա։ 1919։ էջ Է + 192։ Գր. 3·—

ԻԱ. Տաշեան Հ. Յ. Վ., Պոնտական ուսումնասիրութիւններ։ Մասն Ա.՝ Հնագիտական ուղեւորութիւն ի Պոնտոս Յ. Գ. Կ. Անդերսոնի։ Մասն Բ.՝ Ուղեւորութիւն հնախօսական հետազօտութեան ի Պոնտոս եւ ի Փոքր-Հայս Փր. եւ Եւգ. Կիւմոն Եղբարց։ 1919։ էջ Է + 420։ Գր. 6·—

ԻԲ. Ֆէրհատեան Հ. Գ., Ցուցակ Եւրոպական-Հայկական Հրատարակութեանց 1896—1910։ 1919։ էջ Է + 273։ Գր. 3·50

ԻԳ. Պալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Նորագոյն աղբերք Եզնկայ Կողբացւոյ։ 1919։ էջ ԺԱ + 98 + 42։ Գր. 2·—

ԻԴ. Խալաթեանց Բ., Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին։ 1919։ էջ Է + 147։ Գր. 2·—

ԻԵ. Տէր-Պօղոսեան Պր., Նկատողութիւններ Փաւստոսի պատմութեան վերաբերեալ. Մասն Բ.։ 1919։ էջ 126։ Գր. 2·—

ԻԶ. Ակինեան Հ. Ն. Վ., Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ։ Պատմական ուսումնասիրութիւն։ 1920։ էջ ԺԱ + 200։ Գր. 3·—

ԻԷ. Մատիկեան Գեր. Հ. Ա., Կրօնի ծագումը եւ դիցաբանութիւն ըստ համեմատական կրօնագիտութեան։ 1920։ էջ ԺԲ + 334։ Գր. 4·—

ԻԸ. Վարդանեան Հ. Ա., Նիւթեր հայերէն բառագրութեան։ 1920։ Էջ 80։ Ֆր. 1·—

ԻԹ. Վարդանեան Հ. Ա., Յերոնիմեայ Վասն ի քսան եւ յերկուս գիրս առ ի Հեբրայեցւոց զպատմութիւնս բաժանելոյ. 1920։ Էջ 82։ Ֆր. 1·—

Լ. Տաշեան Հ. Յ., Հայ բնակչութիւնը Սեւ ծովէն մինչեւ Կարին։ 1921։ Էջ 84։ Ֆր. 2·—

ԼԱ. Վարդանեան Հ. Ա., Բառաքննական դիտողութիւններ, Գ. 1921։ Էջ 120։ Ֆր. 1·50

ԼԲ. Ակինեան Հ. Ն., Հինգ պանդուխտ տաղասացներ։ 1921։ Էջ 223։ Ֆր. 3·—

ԼԳ. Ոսկեան Գէտ. Հ. Հ., Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը։ 1922։ Էջ Է + 122։ Ֆր. 1·50

ԼԴ. Ակինեան Հ. Ն., Մատենագրական Հետազօտութիւններ, Ա. 1922։ Էջ Զ + 230։ Ֆր. 3·—

ԼԵ. Մովսէսեան Հ. Ղ., Լոռի եւ Բագրատունեաց տան Կորիկեան ցեղի պատմութիւնը։ 1923։ Էջ Է + 95։ Ֆր. 1·—

ԼԶ. Երեմեան Ա., Զահարմահալի հայ ժողովրդական բանահիւսութիւնը։ 1923։ Էջ Ը + 81։ Ֆր. 1·—

ԼԷ. Վարդանեան Հ. Ա., Դասական մանր բնագիրներ, Բ. 1923։ Էջ 162։ Ֆր. 2·—

ԼԸ. Սաղաթէլեան Յ., Բնութեան աւերումը Անդրկովկասում, յատկապէս Հայաստանում։ 1923։ Էջ 66։ Ֆր. 1·—

ԼԹ. Ոսկեան Գէտ. Հ. Հ., Մակաբայեցւոց Բ. գրքին Հայերէն թարգմանութիւնը։ 1923։ Էջ Է + 207։ Ֆր. 3·—

Խ. Վարդանեան Հ. Ա. Բառաքննական դիտողութիւններ, Դ. 1923։ Էջ 130։ Ֆր. 1·50

ԽԱ. Վարդանեան Հ. Ա., Յովհաննէս Ժ. Բար-Շուշանի Հայոց կաթողիկոսին գրած թուղթը։ 1923։ Էջ 102։ Ֆր. 1·50

ԽԲ. Թէրլէմէզեան Ո., Կոմիտաս վարդապետ, կեանքը եւ գործունէութիւնը։ 1924։ Էջ 96։ Ֆր. 1·50

ԽԳ. Քոսեան Հ. Յ., Լիակատար Ցուցակ Հայերէն լրագիրներու, որոնք կը գտնուին Մխիթ. Մատենադարանին մէջ ի Վիեննա 1794—1921։ 1924։ Էջ Զ + 79։ Ֆր. 1·50

ԽԴ. Ակինեան Հ. Ն. Վ., Մատենագրական հետազօտութիւններ, քննութիւն եւ բնագիր։ Հատոր Բ. 1924։ Էջ 150։ Ֆր. 2·—

ծե. Վարդանեան Հ. Ա., *Հայ գրչագիրները*: 1924: էջ 55: Գր. 1.—

ծզ. Երեմեան Ա., *Պարսկահայ նորագոյն աշուղներ*: 1925: էջ 120. Գր. 1.50

ծէ. Ոսկեան Դկտր. Հ. Հ., *Երգ Երգոցի առաջին եւ երկրորդ թարգմանութիւնը*: 1924: էջ 80: Գր. 1.—

ծը. Թէրլէմէզեան Ռ., *Քրիստափոր Կարա-Մուրզա, նրա կեանքը եւ գործունէութիւնը*: 1925: էջ 68: Գր. 1.—

ծթ. Բիւզանդացի Նորայր Ն., *Բնագատութիւն Հայրունականի*: 1925: էջ ԻԴ + 215: Գր. 3.50

ծժ. Կոգեան Դկտր. Հ. Ս., *Կամսարականները, «Տեարք Ճիրակայ եւ Արշարունեաց». պատմական ուսումնասիրութիւն*: 1926: էջ 176: Գր. 2.—

ծժա. Ադոնց Պրոֆ. Ն., *Մաշթոց եւ նրա աշակերտները, ըստ օտար աղբիւրների*: 1925: էջ 56: Գր. 1.—

ծժբ. Ոսկեան Դկտր. Հ. Հ., *Մատենագրական քննութիւններ*: 1926: էջ 192: Գր. 2.—

ծժգ. Կուրտ Էմհարդ, *Տիգրան Բ. եւ Հայ-հռովմէական պատերազմները*: Աշխատասիրեց Հ. Գ. Վ. Գարանֆիլեան: 1926: էջ 250: Գր. 3.—

ծժդ. Սարուխան Առ., *Հոլանդան եւ Հայերը ԺԶ.—ԺԹ. դարերում: Պատմ. ուսումնասիրութիւն, պատկերազարդ*: 1926: էջ 196: Գր. 3.—

ծժե. Աւդալբէգեան Թ., *Անյայտ պատմագրութիւններ Հայոց մէջ ԺԶ. ու ԺԷ. դարերում*: 1926: էջ 76: Գր. 1.—

ծժզ. Տաշեան Հ. Յ. Վ., *Բառախօսական դիտողութիւններ Հայերէն գիտական լեզուի մասին*: 1926: էջ 221: Գր. 3.—

ծժէ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Եզիա Աստուածատուրեան-Մուշեղեան եւ իր գրական արտադրութիւնները*: 1927: էջ 90: Գր. 1.—

ծժը. Աթրպետ, *Ճորոխի աւազանը*: 1929: էջ 242: Գր. 2.50

ծժթ. Մանանդեան Պրոֆ. Յ., *Յունաբան դպրոցը եւ նրա զարգացման շրջանները*: 1928: էջ 303: Գր. 3.50

ծի. Աւդալբէկեան Թ., *Միհրը Հայոց մէջ*: 1929: էջ 164: Գր. 2.—

ծիա. Գիւտ Եպսկ., *Սեւանայ վանքը*: 1929: էջ 134: Գր. 1.50

ՃԻԲ. Սարուխան Ա., *Յարգանք հայ նահատակին: Յիշողութիւններ Յաւխանեանց Քաղաքից: Մէկ պատկերով:* 1930: *էջ* Ը + 128: *Ֆր.* 1·50

ՃԻԳ. Կիւլէսէրեան Բ. Եպս., *Իսլամը հայ մատենագրութեան մէջ: Ա. Գր. Տաթեւացւոյ ընդդէմ Տաճկաց. Բ. Ի Բաշունէ քաղածու: 4 տախտակով: էջ* 240: *Ֆր.* 3·—

ՃԻԴ. Շուր Վ., *Ներոն կայսեր արեւելեան քաղաքականութիւնը: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան:* (Ընդ *մամլով:*)

ՃԻԵ. Օսվալդ Ֆ., *Երկրախօսութիւն Հայաստանի: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: (Ընդ մամլով:)*

ՃԻԶ. Մանդինեան Դկտ. Հ. Ա., *Արայ Գեղեցիկ. համեմատական–քննական ուսումնասիրութիւն:* 1930: *էջք ԺԱ* + 351: *Ֆր.* 4·—

ՃԻԷ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական հետազօտութիւններ: Հտր. Գ: Ղեւոնդ Երէց եւ Մ. Մորենացի:* 1930: *էջք ԺԱ* + 334: *Ֆր.* 4·—

ՃԻԸ. Ակինեան Հ. Ն. Վ., *Թուղթ Մակարայ Բ. Երուսաղեմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց Յաղագս կարգաց Եկեղեցւոյ: Բնագիր եւ քննութիւն:* 1930: *էջ* 128: *Ֆր.* 1·50

ՃԻԹ. Երեմեան Արամ, *Փշրանքներ Ջուղահայ եւ Հնդկահայ բանահիւսութիւններէ: (Տաղեր եւ ժողովրդական երգեր:)* 17—19*րդ դար:* 1930: *էջ* 80: *Ֆր.* 1·—

Լ. Թորգոմեան Դկտ. Վահրամ Յ., *Ծանօթագրութիւնք Ստամպօլոյ պատմութեան Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան: Հատոր Բ.* 1932:

ՃԼԱ. Սարուխան Ա., *Աղեքսանդր Մանթաշեանց, մեծ վաճառականն եւ բարերարը: Երեք պատկերով:* 1931: *էջ* 223: *Ֆր.* 2·50

ՃԼԲ. Ֆասմէր Ռ., *Հայաստանի ոստիկաններու ժամանակագրութիւնը* 833—887 *տարիներու շրջանին: Թրգմ. Հ. Վ. Ինգլիզեան:*

ՃԼԳ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ Վարդապետ եւ իւր Պատմութիւն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն: Հատոր Ա.* 1932:

ՃԼԴ. Ակինեան Հ. Ն., *Դասական հայերէն եւ վիեննական Մխիթարեան Դպրոցը:* 1932:

